# ՌԱԶԼԻՎԻ ԽՈՏՀԱՐՔԸ

*Պոեմ*

*ԴՄԻՏՐԻ ԲԼԻՆՍԿԻ*

Վերջն է հուլիսի։
Վաղ լուսաբաց է ջրերի վրա,
Մշուշն է լողում հորիզոնն ի վեր,
Լաստենիներն են երևում ահա
Վտակի ափին որպես պահակներ։

Ողջ ալիքներն են ողողում անվերջ
Ուռենիների ոտքերը բարակ,
Փայլակն է սուզվել Ռազլիվի մեջ
Եվ դողում է իր կամքին հակառակ։

Հնչում է հեռվում, անտառից անդին,
Գնացքի կանչը տխուր, որպես լաց։
Իսկ այստեղ՝ խաղաղ քողտիկում հանգիստ
Խարույկն է ծխում մինչև լուսաբաց։

Սովորական է այստեղ ամեն ինչ,
Բայց ես երկիրն այս կհիշեմ ցմահ,
Ուր խոտ է հարում՝ աչքերով թովիչ
Քառասունամյա ամրակազմ մի մարդ։

Դեզերից հեռու, կրակի կողքին
Խոտհարն է նստում՝ մի քիչ տաքանա։
Թարմ խոտի բույրով հագեցած քամին
Փայփայում է խիտ մազերը նրա։

Հետո թուղթ առնում, գրում է արագ...
Շեղ ստվերներ են դեզերը փռում։
Հեռու երկնքում աստղերն անարատ
Խարույկից թռած բոցեր են թվում։

Խարույկի երկչոտ բոցը ճարճատում,
Ուզում է նայել ներսը թեյնիկի։
Նրա կկոցված աչքերը ժպտուն
Արտացոլում են բոցը խարույկի։

Հեռուներին է մտախոհ նայում,
Հայացքով գրկում անտառներն անափ։
Մերթ գլխի առատ մազերն է շոյում,
Մերթ էլ կզակն է շփում պատահմամբ։

Եվ գրում է նա...

Փարված լուսայգի կիսախավարին՝
Դողում է ամպի շղարշը բարակ։
Գետաբերանից դուրս գալով լռին՝
Ռազլիվ լիճն է կտրում մի նավակ։

Խոտհարը գիտե, որ այդ նավակով
Փոքրիկ տղերքն են հյուր գալիս իրեն,
Որ Կոստյա քեռուն կօգնեն հաճույքով,
Միայն թե հետո հեքիաթներ լսեն։

Եվ նայում է նա, նայում է երկար
Լայնությունների տեսքով հիացած,
Եվ մանկությունն է տեսնում սեփական
Ժիգուլյովյան զով լեռներում անցած։

Բարակ մի կածան,
Գոտևորելով բլուրը կանաչ,
Լանջն ի վեր ելնում, իջնում ու հետո,
Որ հարթավայրով գնա ու կանգնի
Քողտիկի առաջ։



ԱՊՐԻԼ
№ 4 1962 Թ.



ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
34-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ



Ծործորուկները խոտերի վրա՝
Իրենց կապուտակ աչքերն են բանում,
Պնպեննոտ, բոբիկ իրենց հյուրերին
Դիմավորելով,
Սիրալիր կերպով գլխով են անում։

Երեխաները այս քողտիկի մոտ
Խաղում են ինչպես իրենց տան բակում,
Ծանոթ է նրանց այստեղ ամեն խոտ,
Եվ նրանց առաջ
Ամեն ծառ խոնարհ գլուխն է հակում։

Երբ որ թփերը անշարժ են լինում,
Երբ ոչ ոք չկա, և լուռ է չորս դին,
Խոտհարը դեպի ուռուտն է գնում,
«Կանաչ կաբինետն» իր կիսամթին։

Երկու քոթուկ կա.
Մեկը «աթոռ» է, իսկ մեկը՝ «սեղան»։
Նստում է նա լուռ, տետրակը բանում.
Գրում է, գրում, գրում է երկար,
Մտածում, ապա նորից է գրում։

Իսկ երբ քնում են ամեն թուփ ու ծառ,
Եվ խոտերի մեջ քնում է քամին,
Ընդունում է նա,
Ռազլիվ լիճը լողալով անցած,
Կենտկոմից եկած իր բարեկամին։

Նստում են նրանք չոր խոտի վրա,
Զրույց են անում խոտհարքի մասին,
Եվ Պետրոգրադի մասին մարտական,
Եվ այն մասին, թե ուր է հեռացել
Լենինը հիմա,
Ում մասին այսօր խոսում են այնքան։

Նրանք նստում են մինչև առավոտ,
Նայելով բացվող լույսի շողերին,
Խոտհարն ասում է.
— Ամառը շատ էր ծանր ու դժվարին,
Բայց հոկտեմբերին մարտը կսկսենք։
Թե չէ կարող ենք ուշանալ հանկարծ...





Մարգագետնի մեջ այստեղ ու այնտեղ
Երեխաների ձայներն են հնչում։
Գերանդին ուղիղ կիսաշրջանով
Մտնում խոտի մեջ,
Բլուրն է խուզում։

Կապույտ կտավի զգեստը հագին,
Բոբիկ ոտները ծաղիկների մեջ,
Փոքրիկ Անյուտան կանգնել է թմբին
Ու ձեռքին բռնել ծաղիկները պերճ։

Երեխաները
Գնացել են մութ խորքերն անտառի։
Պտուղներն այնքան շատ են անտառում,
Որ չեն վերջանա,
Եթե հավաքես մի ամբողջ տարի,
Որ Կոստյա քեռին, եթե ուտի էլ,
Չի կարող ուտել մի ամբողջ տարում։
(Բայց նա չի ուտի, կմերժի դարձյալ)։

Երեխաները գնացել են, տես։
Անյուտա, ինչու՞
Խոտհարի մոտից չես հեռանում դու։
Ծաղիկները քո աչքերին նայում
Եվ հրաժեշտ են հիմա տալիս քեզ
Ծաղիկներն ասես։

Լճափից մինչև տապալված կեչին
Պառկել են նրանք ու քեզ են նայում։
Վառվում է ցողը։ Ոչ, ցողը չէ զինջ,
Այլ հավամրգու արցունքն է վառվում։

Որքան ափսոս են ծաղիկները խեղճ,
Բայց նրանց ամեն արտասուքի մեջ
Արևն է ժպտում։ Ի՜նչ ոսկե օրեր։
Քիչ է մնում, թե պտուղների հետ
Զամբյուղում դնես պայծառ արևի
Կաթիլները զինջ, նուրբ ու գունագեղ։

Ինչի՞ն նայելով այդպես շիկնեցիր
Ու ծիծաղեցիր, ասա՛, Անյո՛ւտա,
Ծաղկի՞ն, արևի՞ն, լաստենու ճյուղի՞ն։
Դու չես հավատում ինքդ քեզ անգամ,
Որ ոտանավո՛ր հորինեցիր դու
Առաջին անգամ...

Խոտհարը հոգնեց։ Փայլում է դեմքին
Քրտինքը նրա։
Նա շեղ օձիքով
Վերնաշապիկը հանեց, նետեց վար։
Միայն չգիտես, թե ինչի համար
Չի հանում կեպին, ուր էլ որ լինի,
Դաշտում, անտառում, թե լճի վրա։

Գերանդին է խիտ խոտի մեջ երգում։
Քնել է քամին։ Շոգ է ահավոր։
Լորերն են միայն կանչում իրարու
Եվ պնդում են, որ «ջուր է հարկավոր»։

Քամին արթնացավ կեսօրվա պահին,
Թևահարեց չոր խոտերի վրա,
Թփերին խփեց, խփեց անտառին,
Լճի վրայով դաշտերը թռավ։

Եվ քամին ամպի կողերին ահա
Զարկում է արդեն հրե մտրակով։
Շո՛ւտ արեք, խոտը դիզեցե՛ք արագ։
Ամպը մոտեցավ, գոռաց որոտով։

Խաղում է քամին մանուկների հետ։
Մեկ գետնով տալիս,
Մեկ խոտն է նրանց ձեռքերից խլում։
Կոխկրտեք ուժեղ,
Փոխարինելով Պետյային ահա
Անյուտան թափով դեզն է բարձրանում։

Ժպտում է խոտհարն,
— Ահա ինչպես են հյուրերը քայլում։
Իսկ դեզն անում է, բարձր ու լիքը դեզ։
— Եվս մի խտիտ...
— Օ, Կոստյա քեռի...—
Փոցխը վեր պահած, նա ուրախ նայում,
Դեպ արևելք է նայում, ահա տես։

Նա կկոցում է աչքերն իր բարի,
Ծիծաղում է նա,
Թեքում է կեպին աչքերի վրա,
Հեռուն է նայում։
Բայց չես իմանում, թե ինչի համար
Ուրախանում է հողմի պտույտով
Եվ ասում է նա.
Սիրում եմ երբ որ ամպրոպ է լինում։

Սուլում է քամին
Եվ թափ է տալիս ճյուղերն ուռենու։
Եվ հորդ անձրևն է դեզի մոտ պարում։
Կանաչ ձայների դայլայլը՝ քամին
Թևերի վրա անտառ է տանում։

Իսկ կայծակները՝ Ռագլիվի մեջ
Շուռ եկած կեչու արմատների պես
Կախվեցին մի պահ
Երկնակամարից սև ու ահավոր,
Եվ թնդաց որոտն ու խլացրեց
Ձայները բոլոր։
— Շո՛ւտ։ Դեպի քողտի՛կ։

Անձրևն է թափով խփում տանիքին,
Հոսում է ջուրը խշշալով, դանդաղ,
Եվ ոչ մի վայրկյան քամին չի լռում։
Եվ Անյուտային թվում է՝ քաղցած
Մուկն է քողտիկի կատարը չանգռում։
Իսկ երկինքն ապա...
Երկինքը կարծես կորել է մթնում
Ու սև շեղջեր է դարձել ավազի։
...Մի պատառ հաց է խոտհարը գտնում,
Բաժանում երեք հավասար մասի։

Ո՛վ հացի պատառ։ Ի՞նչ կա աշխարհում
Ավելի համեղ և ավելի թանկ...
Մանուկները չոր խոտի մեջ թաղվում,
Հացի փշրանքներն ուտում են դանդաղ։

— Իսկ ես կպահեմ,— ասում է Վանյան
Եվ կարտուզի մեջ հացը թաքցնում։—
Մայրս անկողնում պառկած է հիվանդ,
Եվ այն օրվանից,
Ինչ իմ հայրիկը կորել է կռվում,
Նա ոտի կանգնել չի կարողանում։

Այդպիսին է նա, մեր Կոստյա քեռին,
Տղային առնում դնում ծնկներին,
Ժպտում է բարի,
Ինչպես հայրիկը այն ցուրտ հունվարին
Դարբասների մոտ, հրաժեշտ տալիս։
Հայրիկի պես է նա բոլորովին,
Կրծքին է սեղմում, շոյում տղային։
Հայրիկի պես է բարի, քնքշավետ,
Թեկուզ ողջ կյանքդ ապրիր նրա հետ...

Որտեղի՞ց է նա բոլորն իմանում։
Ինչպե՞ս հավատաս դու այս աշխարհում,
Որ բոլոր մարդիկ հաց պիտի ուտեն
Եվ ապրեն խաղաղ,
Երբ որ կան այսքան գյուղեր ու քաղաք։
Դու ուսում կառնես,-
Կիմանաս տակն ու գլուխը կյանքի
Եվ մարդ կդառնաս գիտուն, աչքաբաց,
Անուշ հեքիաթը հրեղեն հավքի ինքդ կկարդաս,
Ինքդ կգրես տառը ցանկացած։

Ախ, ինչքան լավ է. Վանյայի դեմքին
Ժպիտ է ծաղկում մի երանավետ։
Նա սավառնակով շուտով մայրիկին
Երկինք կտանի Կոստյա քեռու հետ։

Բացվեց կապուտակ երկինքը նորից,
Եվ օդը լցվեց ծաղկանց բուրմունքով։
Երեխաների խումբը քողտիկից
Դուրս եկավ զվարթ ճիչ ու աղմուկով։
Արևն իջնում էր։ Եվ թվում էր, թե
Ուր որ է հիմա
Կփարվեն լճին այտերը նրա։
Այնքան ցածր էր, որ Անյուտան ձեռքով
Նրան կհասներ,
Թե կանգներ ոտի մատների վրա։

Արևն իջնում էր, իսկ երբ նրա հետ
Երեխաները լիճն անցնում էին,
Խոտհարը մենակ կանգնել էր ափին
Սիրով քնքշավետ
Եվ երկար, երկար նրանց էր նայում
Թախիծն աչքերին։

Նավակը հեռու, հեռու էր արդեն։
Եվ հենց որ ծածկվեց, շտապեց քողտիկ.
Տետրակը բացեց։ Եվ լսվում էր, թե
Ինչպես է քսվում մատիտը թղթին։

Հեռուներին էր մտախոհ նայում,
Հայացքով գրկում անտառներն անափ։
Մերթ գլխի առատ մազերն էր շոյում,
Մերթ էլ կզակն էր շփում պատահմամբ։
Եվ գրում էր նա...

Իսկ առավոտյան
Երեխաները կանչում են հեռվից.
— Հե՜յ, Կոստյա քեռի։ —
Փոշնու ճութն է ոստերի միջից
Վեհերոտ նայում երեխաներին։

Դեպի խարույկն են գնում այն հանգած,
Կանչում են, բայց ինչ, պատասխան չկա։
Չկա կացինը, չկա գերանդին,
Թեյնիկն էլ չկա, դատարկ է չորս դին։

Քայլում են նրանք կածանով այն թաց,
Որը քողտիկից տանում է անտառ,
Որմզդեղնն է դեպի քրատեղ
Առավոտյան դեմ անցել այստեղով.
Ուռենու ճյուղը կոտրել եղջյուրով։

Մի թռչուն ահա իջել է ճյուղից
Եվ ցող է խմում նեղ ոտնատեղից։
Ասա՛, ուռենի՛, նա ու՞ր է հիմա,
Արահե՛տ, ու՞ր ես տարել դու նրան։
Դեռ երեկ էր, որ Վանյային առավ
Նա իր ծնկներին։
Դեռ երեկ էր, որ ծիծաղում էր նա,
Կատակ էք անում...

* * *

Ո՞վ գիտեր, որ նա Լենինն էր, որին
Յունկերներն էին անվերջ որոնում։
Ո՞վ գիտեր, իրոք,
Որ թրաշած էր մորուքը նրա,
Որ գլխարկի տակ
Մազեր չէին, այլ կեղծամ էր պահում։
Որոնում էին նրան ամենուր
Աչքերով մռայլ,
Եվ ամեն, ամեն դարբասաբակից
Լրտես էր նայում։



Գնացքներն ինչ-որ տեղ սուլում
Եվ սուրում էին,
Լսվում էր ինչ-որ մի զինվորական
Երգի եղանակ:
Ո՞վ գիտեր, որ այդ խոտհարքի պահին
Ռևոլյուցիայի շտաբ էր դարձել
Ռազլիվը կանաչ:

Իսկ ինչ-որ հեռու-հեռավոր մի տեղ
Լրագիր էր կարդում պապս հեգելով
Իր կյանքի մասին աղքատ ու ահեղ
Եվ նրանց մասին, որ ապրում էին
Հասարակ մարդկանց կյանքը հեգնելով:

Կարդում էր պապս լրագիրն ըմբոստ,
Եվ հողի մարդկանց
Բռունցքները ամուր սեղմվում էին.
«Կյանք չունենք, քանի կան տերերը գոռ,
Քանի բատրակ ենք,
Կտանջվենք մենք այս սև բախտի ձեռին»:

Եվ մարդիկ լռին՝
Սրահներն էին մտնում կիսամութ,
Ջհեռացնելով աչքերը թերթից.
— Այս ճշմարտությունն այս ո՞վ է գրել:
— Լենինը:
— Այո,
Երևում է, որ
Բատրակ է նա էլ...
— Երևում է, որ վատ չէ մեզանից:

Ո՞վ գիտեր, որ այդ խոսքը Լենինյան՝
Հեռու-հեռավոր գյուղերը հասած,
Հենց նա է գրել
Անտառի խաղաղ քողտիկի մեջ այն,
Ուր ջինջ ցողերից գիշերը անգամ
Լուսավորվում է, որպես լուսաբաց:

Ռազլիվում նորից
Լուսավոր օր է մի ամառային:
Անտառի խորքից արևն է ելնում
Խաղաղ ու բարի:
Քողտիկի առաջ
Սավառնորդն է և բանաստեղծուհին:
— Անյո՛ւտա...
— Պե՛տյա...
— Անցել է ուղիղ քառասուն տարի:

Հարազատ վայրեր: Ծաղիկներ ու խոտ:
Ցողը հավքերի ոտքերն է թրջում:
Երեկ էր կարծես,
Որ թեյ խմեցինք մենք խարույկի մոտ,
Խոտ չորացրինք, լողացանք լճում:

Լսի՛ր, մանկությո՛ւն իմ ոտաբոբիկ,
Քեզնով եմ ապրում ու շնչում կրկին,
Ծանոթ խոտհարը վաղ առավոտյան
Դաշտ է գնացել,
Եվ ուր որ է նա կդառնա քողտիկ:

Չեմ ուզում ասել՝ «երբեմնի մի օր»...
Հացի պատառն եմ ես հիշել ահա:
Լոկ Վանյան չկա, որ ընկավ մի օր,
Մեռավ Պուլկովյան բարձունքի վրա:

Անցնում ենք նորից կածանով բարակ,
Ուր հիմա էլ են լորերը կանչում
Ու թռչում արագ,
Ուր մեր մանկության բույրն է մնացել,
Ուր որմզդեղնի նեղ ոտնատեղից
Թռչունը ցող է խմել ու անցել:

Ջրապտույտն ենք մենք ուզում տեսնել
Մի կրկին անգամ,
Ուր կխեղդվեինք,
Եթե խոտհարը օգնության չգար:
Նա զորավոր միտք ուներ աշխարհում
Եվ զորավոր ձեռք:
Ջրապտույտից նա ոչ միայն մեզ,
Այլ ողջ երկիրն է քաջաբար հանել
Լուսավոր եզերք:

Ճախրում է երգը Ռազլիվի վրա...
Մերթ լռում ու մերթ հնչում է կրկին:
Նրա թրթիռն ու դայլայլը նրա
Վայել են այս պարզ արևածագին:

Գորշ գրանիտե քողտիկն է կանգնած
Թփուտների մեջ, երկնքի ներքո,
Եվ նրա առաջ երկու ծիգ կեչի
Քույրերի նման իրար են փարվում:
Միայն խարույկը, խարույկը չկա...
Պիոներները անցնում են երգով,
Եվ ամեն մեկի նշանի վրա
Խարույկն է վառվում:

Նկ. ՊԵՏՐՈՍ ՄԱԼԱՅԱՆԻ

Թարգմ. Հ. ՍԱՀՅԱՆ ԱՆ





# ԳՐԻՐ՝ ԹՈՂ ՏԱՆՅԱՆ ԴԱ ԵՐԵՎԱՆ

ՎԱԼՏԵՐ ԱՐԱՄՅԱՆ

Ապրում էի Արկտիկայի ափանում: Ինձանից յոթ հարյուր կիլոմետր հեռու, ձյունապատ լեռների միջև, հեղեղատներից պատսպարված ձորակում ապրում էր մի մարդ՝ Յաոխնակի ազգանունով: Ես նրան չէի ճանաչում, չէի տեսել, բայց գիտեի, որ նա ապրում է Սրանչելի կոչվող ափանում: Ամեն գիշեր, երբ վերջանում էին սելեկտորի պաշտոնական խոսակցությունները, մենք ձայն էինք տալիս իրար: Ես սեղմում էի ապարատի կոճակը և կանչում.

— Սրանչելի՜, Սրանչելի՜, Յաոխնակի՜:

— Լսում եմ, Յա՛ն:

— Ինչպե՞ս ես, բարեկամս:

— Ամեն օրվա պես:

Երբ ես ուշացնում էի, նա էր կանչում ինձ.

— Արկտիկա՜, Արկտիկա՜,— կանչում էր նա մեղմ, հանգիստ ձայնով,— ինչպե՞ս ես, Յա՛ն, ի՞նչ ես անում:

— Սպասում եմ՝ լույսը բացվի:

— Լույսը կբացվի, սպասելու կարիք չկա:

— Վախենում եմ չտեսնեմ լուսաբացը, Յաոխնակի:

— Դու ինձ հիշեցնում ես էսկիմոսական մի ավանդություն, Յան, կլսե՞ս պատմեմ:

— Պատմի՛ր:

— Ասում են, շատ տարիներ առաջ, տունդրայում ապրել է մի տարօրինակ մարդ: Ամեն անգամ, երբ գիշերն իջել է երկրի վրա, նա վախեցել է, որ լույսն այլևս չբացվի: Վախեցել ու փախել է օրվա հետևից, փախել է դեպի լեռը և, երբ հասել է լեռան գագաթը, տեսել է, որ լույսը բացվում է, նորից ետ է փախել իր յարանգը, բայց հենց հասել է տուն՝ նորից օրը մթնել է, և նա ետ է դարձել ու փախել դեպի լեռը: Տայու է եղել այդ մարդու անունը: Տայուից ոչ այնքան հեռու ապրել է մի ուրիշ մարդ՝ Ուվրոյկ անունով: Նա տեսել էր, որ Տայուն միշտ փախչում է նույն ահով և արդեն արահետ է թողել մամուռի վրա: Այդ բանն իմացել են նաև մյուս որսորդները և ուզեցել են օգնել մարդուն: Նրանք Տայուի ճանապարհին որսի միս են դրել, որ ուտի, տորբազաններ, որ հագնի ոտքերին, կուխլյանկա, որ գցի ուսերին: Եվ որովհետև տունդրան բաց է, ամեն ինչ այնտեղ լավ է երևում, մարդիկ նայել են նրան և նրանով որոշել, թե օրվա որ ժամանակն է, երբ է մութն ընկնելու, երբ է լույսը բացվելու: Երբ Տայուն աշխատել է գտնել լույսի ու խավարի սահմանը, որտեղ ոչ լույս է լինում, ոչ էլ խավար, և միայն այնտեղ: Իհարկե, նա այդ չգտավ, և չէր էլ կարող գտնել: Բայց ավանդությունն ասում է, թե դրանից հետո էսկիմոսները ու չուկչաները տարածություններն ու ժամանակը չափում էին նրանով. մի գիշեր ու մի ցերեկ ասելու փոխարեն, ասում էին՝ գնալ լեռն ու ետ գալ: Մի խոսքով, Յա՛ն, Տայուն չկա, և նրա լինել կամ չլինելով չէր պայմանավորված խավարի ու լույսի հաջորդականությունը: Գիշերին միշտ էլ հաջորդում է լույսը: Դու կարող ես չսպասել, Յա՛ն, բայց լույսը կբացվի, եթե անգամ դու չլինես:

— Ես ուզում եմ լինել, Յաոխնակի, ուզում եմ տեսնել լուսաբացը:

— Կտեսնես: Հիմա ի՞նչ ես անում, Յա՛ն:

— Կարդում եմ, մի հաստ գիրք ունեմ, պատմվածքների գիրք է:

Երեք տարի շարունակ, ամեն գիշեր, մենք հերթապահում էինք սելեկտորային հեռախոսի նույն գծի վրա, նա՝ գծի սկզբում, ես՝ վերջում: Եվ մենք երբեք իրար չէինք տեսել: Մի անգամ ես ասացի նրան.

— Նկարագրիր քո արտաքինը, Յաոխնակի, ես ցանկանում եմ մոտավոր գաղափար կազմել քո մասին: Ինչպիսի՞ն ես դու:

Նա ասաց.

— Ես, Յա՛ն, ճիշտ այնպիսին եմ, ինչպիսին դու ես ինձ պատկերացնում:

— Ես քեզ պատկերացնում եմ,— ասացի նրան,— հաղթանդամ, լայնաթիկունք, խոշոր, մաքուր սափրված դեմքով, առնվազն հարյուր կիլոգրամ քաշով:

— Ճիշտ է,— ասաց նա,— այդպիսին եմ, Յա՛ն։ Ժամանակը գալիս էր անցնում, ես նրա համար կարդում էի տնից ստացած իմ նամակները, նա ավանդություններ էր պատմում, երգում էր տխուր, թախծոտ երգեր.

— Յա՛ն, սովորեցրու ինձ հայկական երգեր։

Ես նրան սովորեցնում էի, և նա երգում էր։

— Գիտե՞ս, Յա՛ն, ձեր երգերը ինձ դուր են գալիս, մեր երգերի նման են։

Այսպես, հազար կապերով մենք կապվել էինք իրար, բայց միմյանց չէինք տեսել։ Մի օր էլ Յասինակին ասաց, որ այլևս սելեկտորի վրա չի աշխատելու։ Նա ինձ հրաժեշտ տվեց։ Ես սաստիկ վշտացա։ Այդպես վշտանում է մարդ, երբ կորցնում է հարազատին։

Ձմեռը շուտ եկավ։ Ցուրտ էր, սառնամանիք։ Առաջվա նման նստած էի սելեկտորի առաջ. գիշերվա կեսն անցել էր, քունս չէր տանում։ Դուռը թակեցին։ Ես դուռը բացեցի, և ցրտի հետ ներս մտան բուքերի մեջ փաթաթված երեք տղամարդ։ Նրանք անմիջապես հանվեցին, մոտեցան վառարանին.

— Ներեցե՛ք, ինչպե՞ս է կոչվում այս ավանը,— հարցրեց նրանցից մեկը։

— Արկազալա՛,— ասացի ես։ Հարցնողի սառած դեմքը ջերմացավ, աչքերը փայլեցին.

— Ինչպե՞ս է ձեր անունը։ Դուք Յա՞նն եք։

— Յասի՞նակի։

— Այո՛, Յասի՜նակի,— ասաց նա։

Գրկախառնվեցինք։ Նա չափազանց փոքր էր ու նիհար, գունատ էր, աչքերը խորն ընկած։ Ես նայում էի նրան ու զարմանում։ Նա բոլորովին նման չէր իմ պատկերացրած Յասինակուն։

— Իսկ դու ինձ ասում էիր հաղթանդամ ես, լայնաթիկունք...

— Ես չէի կարծում, որ կհանդիպենք, Յա՛ն, դրա համար էլ ուզում էի, որ դու պատկերացնես ինձ այնպես, ինչպես ինքդ ես ցանկանում։ Իսկ ես քեզ այդպես էլ գիտեի, ինչպիսին տեսնում եմ հիմա, միայն թե փոքր-ինչ տարիքով էի կարծում, երիտասարդ ես, Յա՛ն։ Նա թողեց ինձ և մոտեցավ անկյունում դրված սեղանին, որի վրա ընկած էր իմ «հաստ գիրքը»։ Քիչ հետո, ես տեսա՝ նա սրբում էր աչքերը։

— Ի՞նչ պատահեց, Յասի՛նակի։

— Ոչինչ, Յա՛ն։

Նա երեք օր մնաց ինձ մոտ։ Տեղափոխվում էր Արդան։ Երբ եկավ մեկնելու ժամանակը, գրքի վրա գրեց. «Ընկերոջս, բարեկամիս՝ հեղինակից»։

Արդեն շատ տարիներ են անցել։ Այժմ էլ այդ գիրքն իմ գրադարանումն է, և դա միակ բանն է, որ մնացել է Յասինակուց։

Հիմա երեկո է։ Գայանեն՝ աղջիկս, նստած նամակ է գրում իր հեռավոր ծանոթին, որին դեռ չի տեսել։

— Ու՞մ ես գրում,— հարցնում եմ ես նրան և պատմում եմ Յասինակու մասին։

Աղջիկս լսում է և, երբ վերջացնում եմ, ասում է.

— Իսկ ինչո՞ւ, հայրի՛կ, գրքի վրա չէիր նկատում, որ հեղինակը Յասինակին է։

— Գրքի վրա գրված էր՝ Նիկոլայ Չերնոմորչենկո։ Այդ նրա գրական անունն էր, Գայանե՛։

Աղջիկս այլևս հարցեր չտվեց։ Նա շարունակեց իր կիսատ նամակը։

Ո՞վ գիտե, ի՞նչ իմանաս, ե՞րբ է հանդիպելու Գայանեն Տանյային, որն ապրում է Կալի քաղաքում։



Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ

— Իսկ հիմա, հիմա չի՞ կարելի գտնել Յասմին-ակուն,— հանկարծ հարցրեց նա։
— Ո՛չ, չի կարելի։
Նա նայեց ինձ և նկատեց, որ ես իրենից թաքցնում եմ դեմքս։ Նա արդեն մեծ աղջիկ է, ամեն ինչ լավ է հասկանում։

— Ես գրում եմ, որ Տանյան ամառը գա Երևան,— ասաց նա։— Միասին գնանք Աղավնաձոր հանգստանալու։ Ես չեմ ուզում այնպես կարոտել, որ լաց լինեմ։
— Գրի՛ր, աղջիկս, գրի՛ր, թող Տանյան գա Երևան։

# ԱՐԵՎԻ ԺՊԻՏԸ

ԵՐՋԱՆԻԿ ԱՌԱՔԵԼՅԱՆ

Որպես զվարթ գարնան ծիծաղ,
Որպես երգող ոսկե ծիծառ,
Արևն ահա թառեց սարին,
Ժպտաց խաղաղ իմ աշխարհին։

Դուրս հանեց իր գլխիկը թաց
Ձնծաղիկը ճերմակաթույր,
Սիրտը լցվեց խնդուն ու տաք
Արեգակի լույսով մաքուր։

Ելան փափուկ գրկից հողի
Նոր ծաղիկներ ճերմակ ու լուրթ,
Ժպտաց չքնաղ Երևանին
Ու բռնկվեց հրով կապույտ։

Արեգակը ջերմ ու բարի
Անցավ հազար սար ու ձորով,
Դաշտը լցվեց ամեն բույրի,
Ամեն գույնի ծաղիկներով։

Ուրախ երգով ու ծափ տալով
Մանուկները դաշտ գնացին,
Թիթեռների պես խայտալով
Ծաղիկներին խառնվեցին։



Նկ. ՍԵՅՐԱՆ ԽԱԹԼԱՄԱՋՅԱՆԻ

# Եվս մի հարված...

ՀՈՎՀԱՆՆԵՍ ՂՈՒԿԱՍՅԱՆ

Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

1.

Չարաբաստիկ այդ օրը սկսվեց նրանից, որ ութերորդ դասարանցի Վարսիկը շտապելուց կիսախավար նախասենյակում ջարդեց դեղնաշլորի մուրաբայով լի ապակյա բանկաներից մեկը և դպրոց տարավ իր հոր՝ հաշվապահ Հարություն Բաբասյանի պորտֆելը։

Նա այնքան էր ոգևորված դպրոց շուտ հասնելու մտքով, որ ոչ միայն չէր զգում պայուսակի թեթևությունը, այլև, թե ինչպես է հետզհետե ուռչում ճակատի աջ կողմը, որ պատին էր տվել մուրաբայի մեջ սահելու ժամանակ։

Շատերը կասեն, թե՝ ինչ կա որ, պատահմունք է։ Դպրոց էր շտապում և հանկարծ... դեպք է, է՛լի։

Եվ իսկապես, ոչ ոք չի կարող պնդել, որ նման բաները միայն չարերի և անզգույշների հետ են պատահում։

Բայց...

Եվ ահա ամեն ինչ այդ «բայց»-ից է սկսվում։

Վարսիկ Բաբասյանը բամբասկոտ էր։

Ո՞վ չէր ճանաչում նրան։ Է՛լ դպրոց, է՛լ հարևանություն, է՛լ ազգականություն, տեղ չէր թողել, որ իր այդ վատ բնավորությունը ցույց տված չլիներ։ Թողնեիր հենց առավոտից-երեկո մի գլուխ փ՛ըսը-փս, փ՛ըսը-փս։

Եվ ահա այդ առավոտ նա դպրոց էր վազ տալիս ոչ թե դասերի սիրուց, այլ... բամբասելու...

Ու՞մ։ Իրենց դասարանցի Սիրուշ Բաբայանին։

2.

Բանն այսպես էր եղել։

Չարաբաստիկ այս դեպքերի նախօրեին, երեկոյան կողմ Վարսիկը գնում է Սիրուշից ձեռագործի համար գույնզգույն թելեր խնդրելու։ Սիրուշենց բնակարանն էլ առաջին հարկում է։ Եվ ահա մեր Բաբասյանը հազիվ է մոտեցած լինում նրանց տանը, երբ ներսից ինչ-որ խուլ աղաղակներ է լսում։ Սեղմում է քիթը լուսամուտի ապակուն ու, ի՞նչ տեսնի... Սիրուշը գլուխը կախ նստել է սեղանի մոտ, և հայրը մատն է թափ տալիս նրա վրա։ Ու մի աղմու՜կ, մի աղմու՜կ է լսվում ներսից, որ ասել չի լինի։ Հայրը գոռգոռում է խեղճ Սիրուշի վրա և մատը թափ տալով կրկնում.

— Ե՛վս մի հարված, և՛ս մի հարված...

Այ քեզ բա՞ն։ Այստեղ մեր բամբասկոտը համարյա թե կորցնում է իրեն, ափսոսում, որ սենյակը մթնշաղի մեջ է։ Ավելի լավ լսելու և տեսնելու համար քիթն այնպես է սեղմում ապակուն, որ մինչև տուն հասնելը տափակած ու գունատված քթի ծայրը շողում է տաս կոպեկանոցի պես։ Այդպես էլ մոռանում է գույնզգույն թելերը, մոռանում է դասերը, քնում է անհանգիստ ու առավոտյան դպրոց շտապելիս ոտքի տակ է գցում դեղնաշլորով լի բանկան, թևի տակ դնում իր հոր՝ հաշվապահ Հարություն Բաբասյանի պորտֆելը։

Եվ ահա, մինչ տիկին Սոֆյան «վա՜խ-վա՜խ» ասելով մեկ-մեկ հավաքում էր բանկայի փշուրները, իսկ գործից ուշացող հայրը պորտֆելի համար ընկել էր դես ու դեն, Վարսիկ Բաբասյանը ծտից թև առած՝ թռչում էր դպրոց։

3.

Մինչև նա տեղ կհասնի, ես արագ-արագ, մի երկու խոսքով պատմեմ մի քանի կարևոր բաների մասին։

Առաջին. Վարսիկի բամբասկոտությունը բոլորին էլ զզվեցրել էր։

Երկրորդ. ամբողջ դասարանով որոշել էին, որ եթե նա նոր բամբասանք սկսի, մի այնպիսի դաս տան՝ խելքը գլուխը գա...

4.

Առաջին դասը երկրաչափություն էր, մի բան, որ Վարսիկի հոգին հանում էր։ Այդ զուցե և դասատուի խստությունից էր։

Ամպոտ մի օր էր, դասարանը կիսախավարի մեջ, մի քիչ էլ ցուրտ։ Անհանգիստ ու այնքան սառը նստարանից, որքան իրեն դադար չտվող այդ չարաբաստիկ «Եվս մի հարված»-ից, Վարսիկս հեհե, գրասեղանի տակ շոշափելով, պորտֆելից դուրս քաշեց հոր հաշվեմատյանը, գցեց առջևն ու անհամբերությունից դողդողալով կպավ կողքին նստած Արուսի ուսին։

— Արու՛ս, Արու՛ս,— շշնջաց նա։

— Հը, ի՞նչ կա,— առանց շուռ գալու հարցրեց վերջինս։

— Լսի՛ր... երեկ...երեկ երեկոյան... գնացել էի Սիրուշից գույնզգույն թելեր վերցնելու...

— Հետո ի՞նչ անեմ,— իրենց վրա սևեռված դասատուի սուր հայացքից կուչ գալով, դժգոհեց Արուսը։

— Դե լսիր, է՛... Հասա նրանց տանը թե չէ; մի ծե՞ն, մի լա՞ց, մի տուրուդմբո՞ց... Լուսամուտից տեսա։

— Դե լա՛վ, լա՛վ, էլի՞ սկսեցիր...

— Ազնիվ խոսք. հայրը ծեծում էր Սիրուշին ու գոռգոռում. «Ե՛վս մի հարված, և՛ս մի հարված»: Արու՛ս ջան, հո մենակ դասերը լավ սովորելով չի. մարդ պիտի տանն էլ իրեն պահել կարողանա: Տե՛ս, տե՛ս ինչպես է նստել, կարծես ծեծ կերած չլինի... Թողնես, քիթը տնկած՝ մի գլուխ կասի՝ հայրի՜կ:. հայրի՜կս. է՛ս էլ քո հայրիկը: Բայց, խոսքը մեր մեջ մնա. հայրն էլ մի բան չի, հա՜. անունը դասախոս է դրել, ու... շա՜տ անկիրթ է, շա՜տ...

Բայց այստեղ բամբակոտի խոսքը կիսատ մնաց.

— Այդ ի՞նչ է պատահել այդտեղ,— հանկարծ լսվեց դասատուի չոր ձայնը, և Վարսիկը հազիվ կարողացավ պոկ գալ Արուսից:— Ա՛, Բաբայա՛ն, վե՛ր կաց մի տեսնեմ:

Դասարանն իրար անցավ, բայց իհարկե, առանց աղմուկի: Բոլորն էլ հայացքները ուղղեցին մեր բամբակոտի կողմը:

— Էլի ինչ-որ բամբասելու նյութ ես գտել, հա՞,— պրիզմայաձև ակնոցների սառը փայլի տակից աչքերը ոլորելով ասաց Կարապետյանը,— անցիր գրատախտակի մոտ,— ավելացրեց նա, տեսնելով, որ Վարսիկը գրասեղանի եզրից բռնած,



շփոթված դես ու դեն է նայում:

— Գրատախտակի՛ մոտ, գրատախտակի՛ մոտ,— ծոր տալով կրկնեց Կարապետյանը:

Զարաբաստիկ օր. այնտեղ դեղնաշլորով լի բանկան կոտրվեց. այստեղ էլ... գրատախտակի մոտ: Ճար չկար:

Եվ մեր բամբակոտը դողդոջ քայլերով մոտեցավ գրատախտակին:

— Վերցրու՛ կավիճը,— համարյա հրամայեց Կարապետյանը:

«Է՜հ, ահա և վերջի» կարծես ասում էր Վարսիկի ընկնված հայացքը:

Այստեղ պիտի ասել, որ մի շաբաթ էր, որ դասը պտտվում էր նույն թեմայի շուրջը: Դեռ նախորդ դասին էր, որ Բաբայանը մի թունդ «2» էր ստացել. այնպիսի «2», որ ծակել էր դասամատյանի էջը:

— Հիսուներկուերորդ թեորեման է,— սառն ու անտարբեր սկսեց Կարապետյանը,— մի բութանկյուն եռանկյունի գծիր:

Թե դողդողացող ձեռքով ինչպիսի բութանկյուն եռանկյունի կստացվի, այդ էլ թողնում եմ ձեզ: Գծեց մեր բամբակոտը, անկյունների մոտ նշանակեց անխուսափելի ABC-ն և խոր շունչ քաշելով, աղերսական ու անհույս հայացքով լսում էր Կարապետյանի թելադրությունը:

— Դիցուք,— թելադրում էր դասատուն,— դիցուք AB-ն ABC եռանկյան այն կողմն է, որը գտնվում է C բութ անկյան դիմաց, և BO-ն մնացած կողմերից որևէ մեկի, օրինակ՝ AC-ի շարունակության վրա իջեցրած բարձրությունն է. պահանջվում է ապացուցել... ի՞նչ է պահանջվում ապացուցել, ապա՞,— դարձավ նա համարյա շշմած Բաբայանին:

Բաբայանը օրորվեց կրունկների վրա, աղերսական հայացքը հառեց դեպի դասարանը, և այդ ճակատագրական պահին նույնիսկ զգաց, որ բան են քչփչում իրար ականջի և. գրասեղանի տակ կուչ գալով, փոթկացնում:

— Ապա, Բաբայա՛ն, ի՞նչ է պահանջվում ապացուցել,— աչքերն առաստաղին հառելով, նորից հարցրեց Կարապետյանը:

— Պահանջվում է ապացուցել... որ... բութան-

կյուն եռանկյան մեջ...— հուսահատ կմկմաց Բաբասյանը և լռեց:

— Ի՞նչ է պահանջվում ապացուցել,— առաստաղին նայելով նորից կրկնեց անզիջում Կարապետյանը:

— Պահանջվում է ապացուցել, որ... բութանկյուն...

Տիրեց քար լռություն:

— Պահանջվում է ապացուցել, որ դու դարձյալ դասդ չես սովորել, ուրիշ ոչինչ,— հանկարծ վրա բերեց Կարապետյանը հայացքն առաստաղից կըտրելով,— այստե՛ղ բեր դասագիրքդ:

Խե՛ղճ Բաբասյան. նա ասես քարացավ, երբ երկրաչափության գրքի փոխարեն գրասեղանի վրա տեսավ հոր հաշվեմատյանը:

— Բե՛ր, բե՛ր,— առանց իմանալու, թե բանն ինչումն է, հեգնանքով վրա բերեց Կարապետյանը:

Չարաբաստիկ օ՜ր, դեղնաշլո՜ր, բութանկյուն եռանկյունի՜ և... հաշվեմատյան...

— Սա հո հաշվեմատյա՞ն է,— նորից ու նորից ակնոցները վեր ու վար անելով, ասես իր աչքերին չհավատալով, վերջապես բացականչեց Կարապետյանն ու զայրույթով մի կողմ շպրտեց հաշվեմատյանը...

Եվ առաջին անգամ Կարապետյանի դասին մի անասելի աղմուկ բարձրացավ:

Դպրոցի պատմության մեջ այդ դեպքը անջնջելի պիտի մնա:

Բայց չկարծեք, որ պատմությունս վերջացավ: Ամենահետաքրքիրը դասամիջոցին եղավ:

5.

Այդպիսի դասամիջոց թող ոչ ոքի չվիճակվի: Հիշեք, որ ամբողջ դասարանով որոշել էին՝ եթե նա նոր բամբասանք սկսի, մի լավ դաս տան:

Եվ ահա եկել էր այդ օրը:

Ջնայած հաշվապահ Հարություն Բաբասյանի հաշվեմատյանի անակնկալ հայտնությունը ծերունի Խոտտաքիչի հրաշքներից պակաս չէր, և դա էլ հենց բավական էր, որ Վարսիկս ծիծաղի առարկա դառնա, այն, ինչ նա բամբասել էր Սիրուշ Բաբայանի մասին՝ շուռ տվին խեղճի գլխին: Այսինքն ինքն էր ծեծ կերել, և որպես ապացույց ցույց էին տալիս ճակատի ուռուցքը, որն առաջացել էր դեղնաշլորի մուրաբան ոտքի տակ տալու ժամանակ:

Ասես այդ բոլորը բավական չէր, հենց այդ դասամիջոցին, աղջկա պայուսակը թևի տակ խփած, հևիհև ու քրտնած, դպրոց ընկավ հաշվապահ Հարություն Բաբասյանը, որ ամբողջ մի ժամ աշխատանքից ուշանալուց հետո եկել էր տանելու իր անհայտացած պորտֆելը:

Կարապետյանին էլ այդպիսի մի առիթ էր հարկավոր: Հենց այն պահին, երբ խեղճ Հարությունը պորտֆելը գտնելով ուզում էր աշխատանքի շտապել, միջանցքում նրան բռնեց Կարապետյանն ու 52-րդ թեորեմայի պես մի թեորեմա էլ նրա գլխին կարդաց...

Իսկ Վարսիկը իզուր էր աշխատում հավատացնել, որ ինքը չէ ծեծ ուտողը, որ հայրը ոչ թե զանգատվելու համար էր դպրոց եկել, այլ պորտֆելը տանելու: Բոլորն էլ քմծիծաղ տալով նայում էին նրա ճակատի ուռուցքին և կրունկի վրա պտտվելով հեռանում: Եվ այդ օրվանից մեր բամբասկոտը շարունակ լռում է.

— Ե՛վս մի հարված, և՛ս մի հարված...

Այո՛, եթե մեր բամբասկոտը, որ այժմ կարծես հավաքել է իրեն, նորից բամբասել սկսի՝ բավական է ևս այդպիսի մի հարված, և նրա հաշիվը զրոյով կփակվի:

Դուք արդեն կռահեցիք, թե այդ ինչ աղմուկ ու ինչ «ևս մի հարված» էր, որ մեր բամբասկոտի ականջին էր հասել Սիրուշ Բաբայանենց լուսամուտի տակ: Դա պարզապես 1—10-րդ տեղերի համար «Սպարտակ» (Երևան) և «Լոկոմոտիվ» Մոսկվա) թիմերի միջև տեղի ունեցած ֆինալային հանդիպման օրն էր, որը վերջացավ 2:2 հաշվով, և որի մի չարաբաստիկ գնդակն էլ Սեմերջյանի հարվածով մտավ մեր ցանցի մեջ...

Կլինեն ոմանք, անշուշտ, որ կասեն՝ լա՛վ, իսկ ինչո՞ւ էր Սիրուշի դասախոս հայրը մատը թափ տալիս աղջկա վրա:

Շատ պարզ. նա դասախոսելիս էլ սովորություն ունի մատը թափ տալով բացատրել և, ֆուտբոլասեր լինելով, այդ օրը ոգևորված հավատացնում էր աղջկան, որ «Սպարտակը» այնպայման հաղթանակող կլինի:

Բայց մեր սիրելի Սեմերջյանի այդ չարաբաստիկ գնդակը ամեն ինչ փչացրեց...






*Կոմեդիա 1 գործողությամբ, 5 պատկերով*

*Գ. ԽԻՆԿԻՍ ԵՎ Գ. ՇՏԵՖԱՆ*

## ԳՈՐԾՈՂ ԱՆՁԻՆՔ

ՏԻԳՐԱՆԻԿ — 3-րդ դասարանի աշակերտ
ԳԼԽԱՎՈՐ ԽՈՐՀՐԴԱԿԱՆ
ՀԱՐՑԱԿԱՆ
ԲԱՑԱԿԱՆՉԱԿԱՆ
ԳԻԾ
ՍՏՈՐԱԿԵՏ
ԹԱԳՈՒՀԻ-ՎԵՐՋԱԿԵՏ
ԽՈՀԱՐԱՐ
ՊԱՀԱՊԱՆ
ԹՄԲԿԱՀԱՐ
Կետադրության այլ նշաններ

## ՊԱՏԿԵՐ ԱՌԱՋԻՆ

*Բեմի խորքում՝ անտառ, ծառերի բնին փակցված են կետադրության տարբեր նշաններ։ Թագուհի-վերջակետի տերությունն է։ Ձախ կողմում՝ անտի-ճաններ։ Երեկոյանում է։ Նախաբեմում ճեմում է Գլխավոր խորհրդականը։*

ՀԱՐՑԱԿԱՆ — *(բարկացած, հայտնվում է աջից)։* Չեմ հասկանում, մի՞թե կարելի է այսպես գրել։

ԳԻԾ — *(հուզված, ներս է մտնում ձախից)։* Ո՜վ իմաստուն խորհրդական, նա ծիծաղում է մեզ վրա։

ԲԱՑԱԿԱՆՉԱԿԱՆ — *(խիստ հուզված, ներս է մտնում աջից)։* Զլված բա՜ն...

ԳԼԽԱՎՈՐ ԽՈՐՀՐԴԱԿԱՆ — Ի՞նչ է պատահել, ինչի՞ եք խառնվել...

ԲՈԼՈՐԸ ՄԻԱՍԻՆ — Բոլորի պատճառը Տիգրանիկն է...

ՍՏՈՐԱԿԵՏ — *(հայտնվում է կետադրության բոլոր նշանների հետ)։ Այո՛, Տիգրանիկն է։*

ԳԼԽԱՎՈՐ ԽՈՐՀՐԴԱԿԱՆ — Երրորդ դասարանցի Տիգրանի՞կը։ Ես նրան ճանաչում եմ։ Ի՞նչ նոր բան է արել։

ԳԻԾ — *(բորբոքված)։* Նա մեզ հաշվի չի առնում։ Ահա նրա վերջին շարադրությունը՝ «Նամակ տատիկիս ու պապիկիս» վերնագրով։ *(Թափահարում է թղթի մի մեծ կտոր)։*

ՀԱՐՑԱԿԱՆ — Խայտառակեց մեզ։

ԳԼԽԱՎՈՐ ԽՈՐՀՐԴԱԿԱՆ — *(Գծին)։* Ապա թերթիկը լավ բաց, տեսնեմ ի՞նչ է գրել։ *(Գիծը բացում է անարակի թերթը և այն փակցնում է պատին։ Բոլորը պարզ տեսնում են, թե ինչ է գրված)։*

«Սիրելի տատիկ և պապիկ այն բոլոր խոճկորները որ ուղարկել էիք, ինձ սատկեցրին մեր բակի տղաները և մնաց միայն մեկ խոճկորիկ՝ ձեր թոռնիկ Տիգրանիկ»։

ՁԱՅՆԵՐ — Այո՛, այո՛ նա է գրել։ Ահա թե ինչի փախանք նրանից։

ԳԼԽԱՎՈՐ ԽՈՐՀՐԴԱԿԱՆ — *(ժպտալով)։* Եթե չի ուզում սովորել, այն ժամանակ դուք ընդմիշտ հեռացեք նրանից։ Թող ամբողջ կյանքում անգրագետ մնա։

ՁԱՅՆԵՐ — *(ուրախ)։* Այո՛, այո՛, համաձայն ենք։

ԲԱՑԱԿԱՆՉԱԿԱՆ — Զլված բա՜ն...

*Վարագույր*

## ՊԱՏԿԵՐ ԵՐԿՐՈՐԴ

*Վարագույրի առջևում։ Ձախից մտնում է դպրոցական Տիգրանիկը, ձեռքին մի նամակ։ Նրա դեմքն արտահայտում է հոգնածություն։ Կանգնում է բեմեզրին, խոր հառաչում է։*

ՏԻԳՐԱՆԻԿ — Ո՜ւֆֆ... հազիվ եմ ոտքերս քարշ տալիս... Որտե՞ղ է այդ անիծյալ թագավորությունը, Թագուհի-վերջակետի տերությունը։ Չէ՞ որ այնտեղ ապրում են կետադրության բոլոր նշանները։ Ինձ նամակ են ուղարկել... Պա՜հ, մեծ բան է՝ կետադրություն։ Առանց դրանց էլ կարող եմ գրել։ Չգիտես ինչի, դպրոցում էլ են պահանջում... Թե չէ, ի՞նչ գործ ունեի այստեղ։ Քանի ժամ է ճամփա եմ ընկել։ Քաղցած եմ, շատ քաղցած...

*Թագուհի-վերջակետի թագավորությունը։ Առաջին պատկերի դեկորացիաները, բայց ձախ կողմից*



*արդեն երևում է շենքի ճակատը: Նստարաններ ու բազկաթոռ: Ամառային կեսօր: Վարագույրը բացվելու ժամանակ բեմում ոչ ոք չկա:*

ՏԻԳՐԱՆԻԿ — (*մտնում է ձախից, հետաքրքրությամբ դիտում է շուրջը*): Ա՛յ քեզ հրաշք:

*Աջից հայտնվում է Թագուհի-վերջակետը, իսկ նրա հետևից՝ Գլխավոր խորհրդականը:*

ԹԱԳՈՒՀԻ-ՎԵՐՋԱԿԵՏ — (*տեսնում է Տիգրանիկին, որ կանգնել է՝ մեջքով դեպի Թագուհի-վերջակետը*):
Ո՞վ է այս օտարականը: Ի՞նչ է փնտրում մեր թագավորության սահմաններում:

ԳԼԽԱՎՈՐ ԽՈՐՀՐԴԱԿԱՆ — (*բարձրաձայն*): Ա՛յ տղա, ի՞նչ ես անում այստեղ:

ՏԻԳՐԱՆԻԿ — (*շփոթված*): Ես... ես Տիգրանիկն եմ... ես փնտրում եմ Թագուհի-վերջակետին:

ԹԱԳՈՒՀԻ-ՎԵՐՋԱԿԵՏ — Եկ այստեղ, Տիգրանիկ: (*Նստելով բազմոցին*):
Շատ հետաքրքիր է տեսնել այն մարդուն, որն ուզում է որևէ բան գրել առանց մեր օգնության:

ՏԻԳՐԱՆԻԿ — (*իրար անցնելով*): Ես... ես... գիտեք... ես հենց դրա համար եմ եկել...



ԹԱԳՈՒՀԻ-ՎԵՐՋԱԿԵՏ — Նստի՛ր, նստի՛ր: Դու, հավանաբար, հոգնած ես ու քաղցած, այդքան երկար ճանապարհ ես կտրել:

ՏԻԳՐԱՆԻԿ — (*նստելով բազկաթոռի աջ թևին*): Այո՛... այո՛... ես արդեն շատ վաղուց ճանապարհ եմ ընկել...

ԹԱԳՈՒՀԻ-ՎԵՐՋԱԿԵՏ — (*երեք անգամ ծափ տալով*): Կանչե՛լ խոհարարին: (*Ներս է մտնում չաղլիկ խոհարարը*):

ԽՈՀԱՐԱՐ — Ձերդ գերազանցություն, հրամայեցե՛ք:

ԹԱԳՈՒՀԻ-ՎԵՐՋԱԿԵՏ — Հարցրու՝ ի՞նչ է սիրում մեր հյուրը և նրան մի լավ հյուրասիրիր:

ԽՈՀԱՐԱՐ — (*բացում է մի մեծ թղթի փաթեթ ու դիմում Տիգրանիկին*): Սիրո՞ւմ եք ականջներ, թե՞ ձկան արգանակ:

ՏԻԳՐԱՆԻԿ — (*շտապելով*): Իհարկե, շատ եմ սիրում:

ԽՈՀԱՐԱՐ — (*գրի է առնում*): Առաջին տեսակի ճաշ՝ ականջներ: (*Տիգրանիկին*) Իսկ տաքդե՞ղ...

ՏԻԳՐԱՆԻԿ — (*կուլ տալով թուքը*): Շատ եմ սիրում, մանավանդ՝ հում սերով:

ԽՈՀԱՐԱՐ — (*գրի է առնում*): Տաքդեղ՝ հում սերով: Գուցե դուք սիրում եք կարկանդա՞կ:

ՏԻԳՐԱՆԻԿ — Կարկանդա՞կ: Օ՜, անչափ:

ԽՈՀԱՐԱՐ — (*գրի է առնում*): Կարկանդակ՝ ժաժիկով: (*Տիգրանիկին*): Իսկ կարկանդակ չե՞ք ուզում դդումով:

ՏԻԳՐԱՆԻԿ — (*շատ գոհ*): Ես քիչ եմ սիրում դդումով կարկանդակ: Բայց կարելի է:

ԽՈՀԱՐԱՐ — (*կարդում է գրի առածները*): Առաջին տեսակի ճաշ ականջներ երկրորդ տեսակի ճաշ տաքդեղ հում սերով երրորդ տեսակի կարկանդակներ ժաժիկով ու դդումով (*մեկնում է Թագուհի-վերջակետին կերակրացանկը, որը գրված է մեծ տառերով, առանց կետադրության նշանների*): Ձերդ գերազանցություն, ի՞նչ կհրամայեք, պատրաստել բոլորը միասի՞ն...

ԹԱԳՈՒՀԻ-ՎԵՐՋԱԿԵՏ — (*ծիծաղելով*): Այո՛, բոլորը միասին, մեր հյուրին հենց այսպիսին դուր կգա:

ԽՈՀԱՐԱՐ — (*լրջորեն*): Պատվերն ընդունված է:
(*Խոնարհվում է և դուրս գնում*):

ԹԱԳՈՒՀԻ-ՎԵՐՋԱԿԵՏ — (*Գլխավոր խորհրդականին*): Իմաստուն և մեծ խորհրդատու, հրաման տուր մեր մեծարգո հյուրի պատվին նախապատրաստել տոնի ծրագիրը:

ԳԼԽԱՎՈՐ ԽՈՐՀՐԴԱԿԱՆ — Պատրաստ եմ, Ձերդ գերազանցություն: (*Դուրս է գնում*):

ՏԻԳՐԱՆԻԿ — (*զարմանալով*): Տո՞ն... իմ պատվի՞ն... ինչո՞ւ...

ԹԱԳՈՒՀԻ-ՎԵՐՋԱԿԵՏ — Սիրելի Տիգրանիկ, չէ՞ որ դու մեր հյուրն ես:

ՏԻԳՐԱՆԻԿ — (*ավելի զարմանալով*): Այո, բայց ես... (*Դադար: Ներս է մտնում խոհարարը, ձեռքին մի մեծ մատուցարան, որը դնում է սեղանին: Խոնարհվում է ու դուրս գնում*):

ԹԱԳՈՒՀԻ-ՎԵՐՋԱԿԵՏ — Խնդրեմ, սիրելի Տիգրանիկ, այս պատշաճ կերակուրը պատրաստված է ձեր ճաշակով:

ՏԻԳՐԱՆԻԿ — (*ագահաբար հարձակվում է ճաշի վրա, բայց ետ է քաշվում՝ թթված դեմքով*): Բր՜ռռ...

ԹԱԳՈՒՀԻ-ՎԵՐՋԱԿԵՏ — (*ձևացնելով զարմանքի արտահայտություն*): Մեր հյուրը բա՞ն ասաց...

ՏԻԳՐԱՆԻԿ — Ո՛չ... այսինքն... գիտեք, ես միայն... բայց սա ի՞նչ ճաշ է:

ԹԱԳՈՒՀԻ-ՎԵՐՋԱԿԵՏ — Սա այն ճաշն է, որ դու ուզեցիր: Այստեղ և՛ ձկան արգանակ կա,



և՛ հում սերով տաքդեղ, և՛. վերջապես, ժաժիկով կարկանդակ: Այդ բոլորը նման է քո շարադրությանը, որ չունի ստորակետներ...

ՏԻԳՐԱՆԻԿ — *(զզվելով)*: Ժաժիկը ճկա՜ն հե՛տ... բոլորը միասի՜ն... բը՜ռռ *(հոնքերը կիտում է, ուզում է հանդիսականներին բան ասել, բայց այդ ժամանակ վարագույրն արագ իջնում է)*:

## ՊԱՏԿԵՐ ԵՐՐՈՐԴ

*Նույն դեկորացիաները: Թմբկահարություն:*

ԹՄԲԿԱՀԱՐ — *(բարձրաձայն հայտարարում է)*: Նորին-գերազանցություն Թագուհի - վերջակետը:

*Բեմի ձախ կողմից հայտնվում է Թագուհի-վերջակետը՝ թևանցուկ արած Տիգրանիկին: Նրանց հետևում է Գլխավոր խորհրդականը:*

ԹԱԳՈՒՀԻ-ՎԵՐՋԱԿԵՏ — Նստենք, սիրելի Տիգրանիկ:

ՏԻԳՐԱՆԻԿ — *(գեմքը քաղցից տանջված է)*: Թագուհի-վերջակետ, չե՞ք կարող մի կտոր թեկուզ սև հաց տալ:

ԹԱԳՈՒՀԻ-ՎԵՐՋԱԿԵՏ — Ես կարծում էի, թե դու կուշտ ես... Դու լսու՞մ ես, իմաստուն խորհրդական:

ԳԼԽԱՎՈՐ ԽՈՐՀՐԴԱԿԱՆ — Մենք կանենք ամենայն բան, ինչ հաճելի է մեծարգո հյուրին: Սկսենք տոնը:

*Նորից թմբկահարություն: Մեկը մյուսի հետևից ներս են մտնում կետադրության նշանները: Ամեն մեկը ձեռքին ունի խաղալիք, ճաշի տեսակ, լոզունգ, որոնց վրա իրերի անունները գրված են սխալ ուղղագրությամբ. «Նո-շիկ», «ձվա-ցեղ», «տա-կա-ներ»: Հարցական նշանը բռնել է մի գիրք, որն ունի հետևյալ մակագրությունը. «Ռո-Բին-զո՞ն Կրուզո»: Կետադրության բոլոր նշանները պարում են, մոտենում են Տիգրանիկին, բայց երբ նա որևէ բան է ուզում վերցնել, խոնարհվում ու անհետանում են կուլիսների հետևում:*

ՏԻԳՐԱՆԻԿ — Բան չեմ հասկանում... Ինչու՞ են բոլորն ինձանից փախչում...

ԹԱԳՈՒՀԻ-ՎԵՐՋԱԿԵՏ — Ի՛նքդ ես մեղավոր, դու չես ուզում ճանաչել մեզ:

ՏԻԳՐԱՆԻԿ — Ի՞նչ տարօրինակ անուններ են, մի բան չեմ կարողանում կարդալ:

ԳԼԽԱՎՈՐ ԽՈՐՀՐԴԱԿԱՆ — Դու ես աղավաղում:



ՏԻԳՐԱՆԻԿ — Դուք ծիծաղու՞մ եք ինձ վրա *(լաց լինելով)*: Այսպիսի տոն ես այլևս չեմ ուզում: Ես կգնամ այստեղից:

ԳԼԽԱՎՈՐ ԽՈՐՀՐԴԱԿԱՆ — Համբերիր, սիրելի Տիգրանիկ, մենք շատ ենք համբերել:

ՏԻԳՐԱՆԻԿ — *(ջղայնացած)*: Չե՛մ ուզում... չե՛մ ուզում: *(Փախչում է)*:

ԳԼԽԱՎՈՐ ԽՈՐՀՐԴԱԿԱՆ — Գնա՜ց:

ԹԱԳՈՒՀԻ-ՎԵՐՋԱԿԵՏ — *(ծիծաղելով)*: Հեռու չի գնա: Նա քաղցած ու հոգնած է: Պահակին հայտնիր: Թող բոլոր ճանապարհները փակեն:

ԳԼԽԱՎՈՐ ԽՈՐՀՐԴԱԿԱՆ — Լսում եմ, Ձերդ գերազանցություն:

*Վարագույր*

## ՊԱՏԿԵՐ ՉՈՐՐՈՐԴ

*Սենյակ: Խորքում մի պատուհան: Երկու դուռ: Պատի տակ սեղան, որի վրա կան ճաշի տեսակներ: Սենյակում ոչ ոք չկա: Ներս է մտնում խոհարարը:*

ԽՈՀԱՐԱՐ — *(դիմելով հանդիսականներին)*: Սիրելի հանդիսականներ, ես խոհանոցի մեծագույն վարպետ եմ, չգերազանցված խոհարար: Ես ճաշ եմ պատրաստում առանց յուղի, առանց մսի, առանց աղի, առանց սոխի: Էլ ի՞նչ ասեմ: Ինձ նման խոհարար ոչ մի տեղ չկա: Ինձ բոլորն են կանչում, բայց ոչ ոք ինձ չի պահում: Ես այժմ ծառայում եմ Թագուհի-վերջակետի մոտ: Իսկ վա՞ղը: Ո՞վ իմանա... *(Մի քանի անգամ արագ պըտույտ է անում և անհետանում)*:

ՏԻԳՐԱՆԻԿ — *(Ներս է մտնում, գարմանքով դիտում է շենքը)*: Ոչ ոք չկա: *(Մի քանի քայլ անելուց հետո)*: Սա կարծես թե բուֆետ է: Բայց տերը չի երևում... *(Տեսնում է սեղանը՝ վրան ճաշեր)*: Օ՜, ինչ համեղ է: *(Մոտենում է սեղանին)*:

*Բայց այն ժամանակ, երբ նա ուզում է որևէ խորտիկ վերցնել, սեղանը բաժանվում է երկու մասի: Այս ի՞նչ բան է, հո երա՞զ չի:*

ԳԻԾ — *(Ներս է մտնում)*: Ո՛չ, երազ չի, Տիգրանիկ: Դու չէի՞ր, որ սեղան բառը գրել էիր այսպես՝ սե-գիծ-ղան: Ահա և սեղանը բաժանեցի երկու մասի:

ՏԻԳՐԱՆԻԿ — *(շփոթված)*: Դո՞ւ...

ԳԻԾ — Այո՛, ես՝ Գիծս, Թագուհի-վերջակետի ծառան: Մեր թագավորությունից հազարավոր ու միլիոնավոր կետադրության նշաններ են աշխարհ գալիս: Նրանք գնում են մարդկանց մոտ ու դառնում նրանց լավ բարեկամները: Բայց երբեմն նրանցից մի քանիսը ետ են վերադառնում, ինչպես, օրինակ, քո տետրակի միջից:

ՏԻԳՐԱՆԻԿ — Բայց ես... ես...

ԳԻԾ — Գիտեմ, գիտեմ, մի քանի աշակերտներ էլ կարծում են, որ առանց կետադրության նշանների կարող են գրել: Լավ: Դու ինչպես երևում է, քաղցած ես, նստիր կե՛ր:

*Տիգրանիկը շտապ կերպով նստում է սեղանի մոտ, որի բաժանված մասերն արդեն կպցված են: Նա սկսում է ախորժակով ուտել:*

*Աղմուկով բացվում է դուռը:*

ՊԱՀԱԿԱՊԵՏ — *(Ներս է մտնում, ողջունում Գծին)*: Ես ժամանել եմ Նորին գերազանցության հրամանով: Այս օտարականը: *(Ցույց է տալիս Տիգրանիկին)*: Նորին գերազանցություն Թագուհի-վերջակետի հրամանով պետք է պատժվի:

ԳԻԾ — *(Նայում է Տիգրանիկին, որ պատրաստվում է փախչել)*: Ա՛յ ա՛յ, ա՛յ, լավ չի, լավ չի...

ՊԱՀԱԿԱՊԵՏ — *(մոտենում է Տիգրանիկին)*: Գնա՛նք:

ՏԻԳՐԱՆԻԿ — Բայց ես մեղավոր չեմ... Կետադրության նշաններն էլ մեղավոր չեն: Ես գիտեմ, թե այդ նշանները որտեղ պետք է դնել: Ուզու՞մ եք, ես ձեզ կասեմ... թողեք ինձ...

*(Պահապանը չի պատասխանում և նրան տանում է)*:

*Վարագույր*

## ՊԱՏԿԵՐ ՀԻՆԳԵՐՈՐԴ

*Ձախ կողմում անշարժ կանգնած է Թմբկահարը: Դադար: Հանկարծ նա սկսում է թմբկահարել: Ներս*

*են մտնում Գլխավոր խորհրդականը, նրան հետևում են Գիծը, Հարցականը, Բացականչականը և կետադրության մյուս նշանները: Գլխավոր խորհրդականը նստում է բազմոցին: Մնացածները նստում են սեղանի մոտ: Թմբուկը լռում է:*

ԳԼԽԱՎՈՐ ԽՈՐՀՐԴԱԿԱՆ — Մենք հավաքվել ենք այստեղ, որպեսզի դատենք այս օտարականին: *(Թմբկահարը խփում է թմբուկը: Բերում են Տիգրանիկին: Նա վախենալով մոտենում է սեղանին)*: Տիգրանիկ, ի՞նչ կարող ես ասել քեզ արդարացնելու համար:

ՏԻԳՐԱՆԻԿ — Ես ոչ մի բան չեմ արել: Ես նամակ ստացա... Ես այստեղ եկա...



ԳԼԽԱՎՈՐ ԽՈՐՀՐԴԱԿԱՆ — *(ընդհատում է)*: Տիգրանիկ, լավ է ամեն ինչ խոստովանես:

ՏԻԳՐԱՆԻԿ — Ես կետադրության նշանները ճիշտ եմ օգտագործում... Բայց...

ՁԱՅՆԵՐ — Պատժե՜լ, պատժե՜լ...

ԳԼԽԱՎՈՐ ԽՈՐՀՐԴԱԿԱՆ — Չպետք է շտապել: Վերջին անգամ հնարավորություն ենք տալիս նրան՝ պատժից ազատվելու:

ԳԻԾ — Դուք ի՞նչ եք առաջարկում, Գլխավոր խորհրդական:

ԳԼԽԱՎՈՐ ԽՈՐՀՐԴԱԿԱՆ — Ես առաջարկում եմ դատավճիռը գրել այն ձևով, ինչպես Տիգրանիկը գրել էր իր տատիկին ու պապիկին:

ԲԱՑԱԿԱՆՉԱԿԱՆ ՆՇԱՆ — Ճիշտ է:

ՀԱՐՑԱԿԱՆ — Ինչպե՞ս:

ԳԼԽԱՎՈՐ ԽՈՐՀՐԴԱԿԱՆ — Արձակենք դատավճիռը առանց կետադրական նշանների, այսինքն առանց մեր օգնության:

ՏԻԳՐԱՆԻԿ — Ի՞նչ կա որ:

ԳԼԽԱՎՈՐ ԽՈՐՀՐԴԱԿԱՆ — Կտեսնես: *(Նստում է սեղանի մոտ, մեծ թղթի վրա գրում և հետո այնպես փակցնում պատին, որ հանդիսականը կարողանա կարդալ)*: Այստեղ գրված է նորին գերազանցություն թագուհու դատավճիռը. «Ներել չի կարելի բանտարկել»:

ՏԻԳՐԱՆԻԿ — *(տարակուսած)*: Ոչինչ չեմ հասկանում...

ԳԻԾ — Մենք նույնպես...

ՀԱՐՑԱԿԱՆ — Մի՞թե չես հասկանում:

ՏԻԳՐԱՆԻԿ — Այս նախադասության մեջ չկա ստորակետը..

ԲԱՑԱԿԱՆՉԱԿԱՆ — Այո՛, չկա ստորակետը:

ԳԻԾ — Ստորակետից է քո բախտը կախված... Որտե՞ղ պետք է դնել:

ՏԻԳՐԱՆԻԿ — Այնտեղ, որտեղ պետք է:

ՀԱՐՑԱԿԱՆ — Իսկ գիտե՞ս որտեղ... *(Տիգրանիկը մտածում է)*: Դու նոր ասացիր, որ գիտես կետադրության նշանները՝ օգտագործե՛լ:

ԲԱՑԱԿԱՆՉԱԿԱՆ — Զլված բան:

ԳԻԾ — Չեմ հավատում, որ նա գիտե:

ԳԼԽԱՎՈՐ ԽՈՐՀՐԴԱԿԱՆ — Տեսնո՞ւմ ես, քեզնից է կախված քո փրկությունը: Ստորակետը դիր այնտեղ, որտեղ դու անհրաժեշտ ես գտնում:

*Տիգրանիկն այնպես է շուրջը նայում, կարծես թե մեկը հուշել է ազում: Նորից հայացքը ուղղում է թղթին: Աստիճանաբար նրա դեմքը փայլում է: Նա համարձակորեն ստորակետը դնում է «Ներել չի կարելի» բառերից հետո: Հանդիսավորությամբ նայում է: Բայց կետադրության բոլոր նշանները, հառաչելով թափվում են միմյանց վրա:*

ՁԱՅՆԵՐ — Ա՛յ, ա՛յ, ա՛յ...

ՏԻԳՐԱՆԻԿ — Ո՛չ, այսպես չէ, այսպես չէ: *(Ջնջում է ստորակետը և այն դնում է «Ներել» բառից հետո)*: Այստեղ պետք է դնել, այստեղ... *(Կետադրության բոլոր նշանները հառաչելով*



*վերադառնում են իրենց տեղը):* Ա՜խ, նոր միայն հասկացա, թե ինչ մեծ նշանակություն ունի փոքրիկ ստորակետը: *(Գրկում է Ստորակետին ու ջերմորեն սեղմում նրա ձեռքը):*

ՀԱՐՑԱԿԱՆ — Ինչպե՞ս, միայն Ստորակետի՞ն ես շնորհակալություն հայտնում:

ՏԻԳՐԱՆԻԿ — Ո՛չ. ի՞նչ եք ասում: Կետադրության բոլոր նշաններին էլ: *(Սեղմում է բոլորի ձեռքը):* Իսկ հիմա... կարո՞ղ եմ տուն գնալ:

ԳԼԽԱՎՈՐ ԽՈՐՀՐԴԱԿԱՆ — Այո՛, այժմ կարող ես գնալ:

ՀԱՐՑԱԿԱՆ — Մենա՞կ:

ՋԱՅՆԵՐ — Մենք նույնպես կգնանք նրա հետ...

ՏԻԳՐԱՆԻԿ — *(ուրախությամբ):* Դուք ուզում եք ինձ հետ գալ:

ՍՏՈՐԱԿԵՏ — Այո՛: Մենք անպայման կգանք: Կարծում եմ, որ մենք այսուհետև կլինենք բարեկամներ:

ՀԱՐՑԱԿԱՆ — Զգիտեմ, կարո՞ղ եմ հավատալ:

ԲԱՑԱԿԱՆՉԱԿԱՆ — Այո՛, կարող ես հավատալ, կարող ես հավատալ:

ՁԱՅՆԵՐ — Այո՛, այո՛, կարող ես հավատալ, կարող ես հավատալ:

*Տիգրանիկը ուղղվում է դեպի դուռը, նրա հետևից՝ կետադրության բոլոր նշանները: Նրանց առաջնորդում է Գլխավոր խորհրդականը: Դանդաղ իջնում է վարագույրը:*

ԹԱԳՈՒՀԻ-ՎԵՐՋԱԿԵՏ — *(դիմում է հանդիսականներին):* Վերջակետ:

*Փոխադրեց՝ ՀԵՆՐԻԿ ՍԵՎԱՆ*



*Նկ. ՍՈՒՐԵՆ ՍՏԵՓԱՆՅԱՆԻ*

# ԾԱՂԻԿՆԵՐ

*ՎԱՀԱԳՆ ԿԱՐԵՆՑ*

Ո՞վ չի սիրում ծաղիկներ,
Կանաչ թփեր՝ պարտեզում,
Ծաղկի քնքուշ աչիկներ,
Որ բացվում են ու նազում:

Ծաղիկները մեր նամփին
Շուք են տալիս ու թովչանք,
Տանը, այգում, գետափին
Բույր են տալիս, անրջանք:

Կարո՞ղ է մեկն աշխարհում
Լինել ծաղկին անտարբեր,
Ով որ ծաղիկ է սիրում,
Թող խնամի ծաղիկներ:

Թող բաղեղներ ծփան լուրթ,
Կախվեն ինչպես կանաչ ամպ,
Ծաղիկներով կապտաշուրթ
Զարդարեն դուռ, պատշգամբ:

Եվ ծաղիկները զանգակ,
Որ զանգի ձայն չեն հանում,
Թող առանց ձայն զրնգան
Առավոտյան զով քամուց:

Թող մեխակներն հեզանազ
Լացեն թովիչ բուրմունքով,
Դառնա թեթև մի երազ
Մեր քաղաքի երեկոն:

Թող ամենուր ծաղկեն շա՜տ
Երիցուկներ սպիտակ,
Համրիկ, նարգիզ ու շուշան,
Անմոռուկներ կապուտաչ:

Թող սյուներից կախվեն վար,
Պատշգամբից շենքերի,
Այգիներից մեր դալար,
Կամուրջների կողքերից:

Մրցեն վարդերը վառման
Շենքերի հետ վարդաքար,
Թող մեր քաղաքը դառնա
Վարդերի ծով մի շուքա:

ՄՐՑԱՆԱԿԱԲԱՇԽՈՒԹՅԱՆ

ՆՅՈՒԹԵՐԻՑ

## ԳԱՐՈՒՆ

Եկել է գարուն
Ծիտիկի կանչով.
Երգում է առուն
Ուրախ կարկաչով:

Ծաղկում են խաղաղ
Պարտեզն ու այգին.
Մանուկներն ուրախ
Խաղում են կրկին:

ՀՈՒՓՍԻԿ ՍԻՄՈՆՅԱՆ

(Լենինական, Բ. Ղարիբջանյանի անվան դպրոցի 3-րդ ա դասարանի աշակերտուհի, 10 տարեկան)



ԸՆԿԵՐՍ ՄԻՇԱՆ

ԱՐՄԵՆ ՈՍԿԱՆՅԱՆ

(Հարավսլավիա, Բելգրադ, 6-րդ կարգի աշակերտ)

## Սիրելի խմբագրություն

Տարիներ առաջ, երբ ես դեռ փոքր էի, իմ պապը պատմում էր, որ Բելգրադը փաշիստներից ազատագրելու ժամանակ սովետական բանակային Լիլոյան ազգանունով հայ մի զոհվել է, և նրա գերեզմանը գտնվում է մեր բնակարանի մոտակա պարտեզում:

Մի քանի տարի հետո, երբ ես մեծացա և դպրոց գնացի, նոյեմբերի 20-ին, Բելգրադի ազատագրման օրը, իմ դասարանի ընկերներուս հետ այցելեցինք գերեզմանոցը: Այնտեղ ես մի շիրմաքարի վրա նկատեցի մայոր Լիլոյանի անունը: Անմիջապես վերհիշեցի պապիս պատմածը և ձեռքիս ծաղկեփունջը դրի Լիլոյանի շիրմաքարին: Ուրախ էի, որ պատահմամբ գտա Լիլոյանի գերեզմանը:

Այդ օրեն սկսյալ տարին մի քանի անգամ այցելում եմ Լիլոյանի գերեզմանը և ծաղիկներ դնում նրա շիրմի վրա:

Փոքր եղբորս՝ Արայիկի հետ հաճախ կըխոսենք, որ եթե օր մը Հայաստան գանք, մեզ հետ Լիլոյանի հողակույտեն ափ մը հող պիտի բերենք:

Սիրելի խմբագրություն, ես նկարել շատ եմ սիրում: Ուղարկում եմ մի նկար, եթե հավանում եք, խնդրում եմ տպագրեք:

ԱՐՄԵՆ ՈՍԿԱՆՅԱՆ



ՀԵՐՄԻՆԵ
(Կահիրե, Նուբարյան վարժարանի
աշակերտուհի, 7 տարեկան)

ՊԱՐՈՂ ՀԱՅՈՒՀԻՆԵՐ



## ՓՈՔՐԻԿ ՀՆՁՎՈՐԸ

Ունեմ փոքրիկ գերանդի,
Խոտն եմ հնձում մեր հանդի,
Իմ այծիկին տալիս կեր,
Որ. տա առատ կաթ ու սեր.
Թող իմ քույրիկը ուտի,
Վազվզի ու թռչկոտի:

ՆԱԶԻՐԱ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

(Նոյեմբերյանի շրջան, Դաշխաթանի
միջնակարգ դպրոց, 15 տարեկան)

ՍԵԴԱ ԲԵՔԱՐՅԱՆ
(Երևան, Կրուպսկայայի անվան դպրոցի 1-ին
դասարանի աշակերտուհի, 8 տարեկան)

ԱՂՋԿԱ ԴԻՄԱՆԿԱՐ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՊԱՐԻ ԱՆՍԱՄԲԼԻ ՆՅՈՒԹԸ

ՎԻԿԻ ԵՍԱՅԱՆ

*(Կահիրե, Նուբարյան Վարժարանի աշակերտ, 11 տարեկան)*



*Հայաստանի պետական պարի անսամբլը վերջերս այցելեց արաբական մի շարք երկրներ։ Ամենուր մեր անսամբլը մեծ ընդունելություն էր արժանանում։ Առանձնապես ոգևորված էին այդ երկրներում բնակվող հայերը, որոնց սրտերում պարվեստի մեր վարպետները անջնջելի տպավորություն թողեցին։*

*Ահա թե ինչ տպավորություն են տվել Հայկական պարի անսամբլի համերգներից Կահիրեի Նուբարյան Վարժարանի աշակերտները։*

## ԳԱՐՈՒՆ

Դաշտում, այգում, ամենուր
Տարածվել է ծաղկի բույր,
Մեղուները խենթացած,
Քաղցր փոշով ծանրացած,
Ուրախ ճախրում են, թռչում,
Կապույտ-կապույտ եթերում։
Օդում երգեր կան այնքան,
Լույս ժպիտներ կան մանկան,
Երազներ կան և հույզեր,
Կարոտներ կան, խինդ ու սեր։
Ուզում եմ ես էլ թռչել,
Ծաղիկների բույր բերել,
Ծաղկով, երգով ու բույրով
Իմ գարունը զարդարել։

ԴԱՎԻԹ ԷՅԼԱԶՅԱՆ

*(Ղափան, №1 դպրոց, 8-րդ դասարանի աշակերտ)*



ԱԼՅՈՇԱ ԳԵՎՈՐԳՅԱՆ

*(Թալինի շրջան, գյուղ Վ. Թալին, 7-րդ դասարանի աշակերտ, 13 տարեկան)*

Վ. ԹԱԼԻՆԻ ՓՈՔՐ ԵԿԵՂԵՑԻՆ

# ԻՄ ՇՆԻԿԸ

Գեղեցիկ է իմ շնիկը,
Մռմռում է, վազվզում,
Թաթով թերթում է իմ գիրքը,
Ինձ հետ խաղում պարտեզում։

Իմ շնիկին շատ եմ սիրում,
Նա էլ է շատ սիրո՜ւմ ինձ,
Թեկուզ հաճախ է խանգարում
Ու կտրում ինձ դասերից։

— Ոչինչ,— ասում է մայրիկը,—
Շուտով, երբ նա մեծանա,
Լուրջ կպահի իր դնչիկը,
Խելոք մի շուն կդառնա։

*ԱՇՈՏԻԿ ՎԱՐԴԱՆՅԱՆ*

*(Թալինի շրջան, գյուղ Աշնակ, 8-ամյա դպրոցի 7-րդ դասարանի աշակերտ)*

*ԼԱԼԱ ՄԱԼԽԱՍՅԱՆ* ԴԱՇՏԵՐԻ ԱՇՆԱՆԱՅԻՆ ԳՈՐԳԸ

*Ապարանի շրջան, գյուղ Քուչակ, 9-րդ դասարանի աշակերտուհի, 15 տարեկան)*

*ԱՆԱՀԻՏ ԴԱՎԹՅԱՆ*
*(Երևանի № 51 դպրոցի 5-րդ դասարանի աշակերտուհի)*

ԱՇՈՒՆԸ ԱՐԱՐԱՏՅԱՆ ԴԱՇՏՈՒՄ

ՄՐՑԱՆԱԿԱԲԱՇԽՈՒԹՅԱՆ ՆՅՈՒԹԵՐԻՑ



# ՄԵԾԱԿԱՆՋ ԱՐՋՈՒԿԸ

— Ա՜խ, այդ մանկապարտեզի երեխաները,— գանգատվում էր Մեծականջ արջուկը։— Մոռանում են լավ սրբել ոտքերը։ Դուրսը անձրև է, ցեխ, դրա համար էլ դռան առջև շոր է փռված, որպեսզի ցեխոտ կոշիկները սրբեն... Բայց ինչպե՞ս կարող ես այդ երեխաներին կարգ ու կանոն սովորեցնել, որ հատակը չկեղտոտեն, որ կեղտոտ ոտքերով մինչև հանդերձարան չգնան։

— Ասե՞մ ինչ պետք է անել,— բացականչեց Բիմբոն և ինչ-որ բան շշնջաց արջուկի ականջին։

— Կեցցե՛ս,— ծափ տվեց Մեծականջը թաթիկներով։

Վաղ առավոտյան վազելով մանկապարտեզ եկավ Վոյտուսը։ Նա ուզեց մտնել ննջարան, բայց տեսավ, որ ճանապարհը փակ է. Մեծականջն ու փոքրիկ նեգրը պարանը ձգեցին հենց ուղեգորգի ծայրին։ Պարանի մի ծայրը բռնել էր արջուկը, մյուսը՝ Բիմբոն։

Վոյտուսը փորձեց թռչել պարանի վրայից, կարծելով թե խաղ է։ Բայց հանկարծ լսեց արջուկի խիստ ձայնը։

— Խնդրում եմ ոտքերը սրբել։

Վոյտուսը ոտքերը սրբելուց հետո մոտեցավ մեծականջին.

— Հիմա ես եմ ուզում պարանը քեզ հետ բռնել, արջուկ ջան...

Եվ այսպես մեկ Վոյտուսն ու արջուկը, մեկ արջուկն ու նեգրիկը պարանը բռնելով, մաքրել տվեցին բոլոր երեխաների ոտքերը։

Լավ բան էր մտածել Բիմբո-նեգրիկը։

Լեհերենից թարգմանեց՝

Մ. ԳՐԱԽՈՎՍԿԱՅԱ

# ԱՌՎԱԿ

ՄԵՏԱՔՍԸ

Նոր ուժ առած արեգակից,
Առվակն ելավ սառցի տակից։
Հովերի հետ ուրախ ժպտում,
Խնդություն է բերում մարդուն։
Թռվռում է շողը վրան,
Թոթովում է մանկան նման։
Ճիշտ է, չունի ճարտար լեզու,
Բայց անուշ է այնքան խոսում,
Կարծես քույրիկն իմ՝ Թամարան,
Ընթերցում է «Այբբենարան»։



Նկ. ՄԱՐՏԻՆ ՊԵՏՐՈՍՅԱՆԻ

# ԳԵՏԱՓԻՆ

ՌԱԶՄԻԿ ՍԱՐԳՍՅԱՆ

(ավտովարորդ)

Փոքրիկ տղա, այսքան վաղ
Ի՞նչ ես անում ձորակում։

— Արևից՝ շող, ծաղկից՝ շաղ,
Ջրից երգ եմ հավաքում։

Բայց տեսնում եմ, որ ոչինչ,
Ոչինչ չկա քո գոգում։
— Ինչպե՞ս տեսնես դու այն՝ ինչ
Կուտակել եմ իմ հոգում։

# ԱԳԱՀԸ ԵՐԿՆՔՈՒՄ

*հեքիաթ*



ՄԱՐԿ ԳԻՏԼՅԱՐՍԿԻ

Կար-չկար մի ագահ մարդ կար...

Այդ ագահն իր ունեցած-չունեցածը պահում էր երկաթե մի հսկա սնդուկի մեջ։ Սնդուկը փակել էր կողպեքով, բանալին թաքցրել մի տուփի մեջ, տուփը թաղել բակում, կոճղի տակ, իսկ ինքն էլ վրան նստած՝ օր ու գիշեր հսկում էր։ Այնպես որ նրա բանն ու գործը ագահությունն էր միայն։

Գիշերները, նա երկինք էր նայում և հոգոց հանելով խոսում ինքն իրեն. «Ա՜յ թե կարողանամ պարկիս մեջ լցնել բոլոր...»

Եվ ագահը որոշեց երկինք բարձրանալ։ «Երբ լուսնյակը դուրս գա,— մտածեց նա,— ես պարանի ծայրը օղակ արած կգցեմ նրա եղջյուրին և կբարձրանամ։ Իսկ երկնքում արդեն իմ գործը գիտեմ՝ պարկս ու գրպաններս կլցնեմ աստղերով»։

Այդպես էլ արավ։ Հենց որ լուսինը դուրս եկավ, պարանը շպրտեց նրա եղջյուրին և սկսեց վեր մագլցել։ Բարձրացավ, բարձրացավ, բայց մինչև հասավ երկինք՝ բոլոր աստղերը մարեցին։

Էլ ագահն ի՞նչ աներ. հո դատարկ երկինքը չէ՞ր լցնելու պարկը։ Քոռ ու փոշման ուզում էր նորից երկիր վերադառնալ, երբ հանկարծ աչքն ընկավ մի ամպիկի։ «Ա՜յ, լավ բա՜ն,— ուրախացավ նա,— գոնե այս ամպիկը լցնեմ պարկս»։

Եվ ագահը պարկի բերանը լայն բացած՝ ծածուկ մոտեցավ ամպիկին։ Բայց էլի ագահի բախտը չբանեց, ամպիկն արագ սահեց մի կողմ։ Կատաղեց ագահն ու ընկավ նրա հետևից։

Վազեցին երկար, և ամպիկն ինչքան վազեց, այնքան մեծացավ ու դարձավ մի հսկայական ամպ։ Հենց որ ամպ դարձավ, կանգ առավ ու սպասեց ագահին։

Ագահը հասավ նրան ու հևալով գոռաց.

Նկ. ՍՏԵԼԼԱ ԱՐԻՍՏԱԿԵՍՅԱՆԻ

— Վերջապես կխցկե՜մ քեզ իմ պարկը. վեջս չի, որ դու սև ես, սև լինես, թե սպիտակ, միայն թե իմ պարկում լինես։

Բայց ամպն էլ իր ձևով պատասխանեց նրան. այնպես որոտաց ու փայլատակեց, որ ագահն ուշագնաց եղավ։ Երբ ագահի ուշքը տեղն եկավ, նայեց չորս բոլորն ու զարմացավ. ամպի հետքն անգամ չէր մնացել։ Իսկ նրա տեղում հուրհուրում էր յոթ գույնանի ծիածանը, որն իր գույնզգույն կաթիլներով ասես արևի շողերին հագցված մի ադամանդյա մանյակ լիներ։

Ագահն ապշեց։ Նրա աչքերը շլացան այդ աննկարագրելի գեղեցկությունից և նա հրճվանքից երեխայի պես ծափ տալով գոռաց.

— Ջա՜ն ծիածան, ջա՜ն ծիածան...

Ագահը տեսավ, որ ծիածանն իրենից չի



փախչում, պարանի օղակը գցեց նրա ծայրին և ձգելով սկսեց իջնել Երկիր՝ իր հետ իջեցնելով նաև ծիածանը:

Իջավ Երկիր ու մտածեց. «Կկապեմ ծիածանի ծայրը տանիքից, և այդպիսով ծիածանը միմիայն ինձ համար կշողա ու կբարձրացնի տրամադրությունս»: Բայց հանկարծ նա մռայլվեց սատանայի պես: Ահա թե ինչ անցավ նրա մտքով. «Մինչև ծիածանը հասցնեմ իմ տուն, քաղաքի վրայով անցնելիս նրան կնայեն ու կուրախանան բոլորը՝ մեծից—պստիկ: Թե ամեն մեկը մի անգամ նայի, էլի հարյուր հազար մարդ կըտեսնի, հարյուր հազա՜ր...» Այս թիվը սարսափեցրեց ագահին, քիչ մնաց սիրտը ճաքեր. «Չէ՛, պետք է մի հնար գտնել, որպեսզի ինձնից բացի ոչ մեկը չտեսնի ու չուրախանա. համ էլ ծիածանն այդքան հայացքների չի դիմանա, կմաշվի... ի՞նչ անեմ»:

Եվ նա որոշեց. «Ծիածանը կխցկեմ պարկս, կբերեմ տուն ու կպահեմ փակ սենյակում ու մի ճեղք էլ չեմ թողնի, որ ոչ ոք նրա չնայի...»

Ագահը նորից բացեց պարկի բերանը, բայց հսկա ծիածանն ինչպե՞ս մտցնի ու տեղավորի պարկի մեջ: Սեղմված ծիածանի գույներն առանձին-առանձին պոկելով իրարից, ժապավենի պես փաթաթեց ու խցկեց պարկը: Բոլորը տեղավորելուց հետո ամուր կապեց պարկի բերանը, շալակն առավ ու տուն վազեց: Տուն մտավ, փակվեց սենյակում և, կապը քանդելով, պարկը շուռ տվեց, որ միջինը դատարկի: Բայց ինչքան էլ թափ տվեց, պարկից ոչինչ չթափվեց: «Զարմանալի է, տեսնես ինչու՞ ծիածանը դուրս չի գալիս»— մտածեց նա ու գլուխը մտցնելով պարկը՝ տեսավ դափ-դատարկ էր: Աչքերին չհավատաց, նորից գլուխը մտցրեց պարկը և այսպես հարյուր անգամ: Մինչև իրիկուն գննեց, թափ տվեց, բայց այնտեղից ծիածանի մի ծվեն էլ չթափվեց: Եվ այսպես, նա ծիածանի յոթ գույնը չուզեց տալ մարդկանց, բայց իրեն էլ ոչինչ չհասավ:

Ինչ իմանար ագահը, որ ծիածանը՝ երկնքի ազատ ու անկաշկանդ դուստրը, շողում է հավասարապես բոլորի համար, և ոչ ոք ոչ մի տեսակ պարկում նրան չի կարող բանտարկել: Ասենք, դա ագահի խելքի բանն էլ չէր:

Թարգմ. Գ. ԲԱՆԴՈՒՐՅԱՆ






ԼՅՈՒՑԻՆԱ ԿՇԵՄԵՆԵՑԿԱ

(Լեհ բանաստեղծուհի)

Ապրիլի մեկն է, գիտե՞ս,
Կատակների ուրախ օր,
Տես, Դորոտա, չխաբվես,
Խաբելու օրն է այսօր։
Չգիտե՞ս, որ մեր ծին էլ
Երկու քուռակ է ծնել,
Ոսկե բաշերով,
Ոսկե պոչերով,
Ոսկե, զրնգուն
Չորս սմբակներով։
Թե ուզում ես շուտ տեսնել,
Գոմը վազիր շտապով…
Հա՛, հա՛, հա՛, հա՛, հա՛,
Հի՛, հի՛, հի՛, հի՛, հի՛…
Ապրիլի մեկն է, գիտե՞ս,
Կատակների ուրախ օր,
Զվարճանում ենք այնպես,
Խաբվելը հեշտ է այսօր։
Ես կխաբեմ Ֆելիքսին,
Թեկուզ հետո ինձ դնքսի։
— Ֆելի՛քս, մի նայի՛ր,
Վարտիքդ ծակ է,
Այն էլ այնքան մե՜ծ,
Ա՛յ, թե կուտես ծեծ…
Ֆելիքսը խիստ զարմացավ,
Նայեց, բայց ծակ չգտավ։
Հա՛, հա՛, հա՛, հա՛, հա՛,
Հի՛, հի՛, հի՛, հի՛, հի՛…
Ապրիլի մեկն է, գիտե՞ս,
Կատակների ուրախ օր,
Զվարճանում ենք այնպես,
Խաբվելը հեշտ է այսօր։



Ճաշ է եփում մայրիկը
Եվ ասում է խառնելով,
— Է՜հ, զահլա գնաց
Միս ու ապուրից,
Դուք գոհ կմնաք
Այսօրվա ճաշից՝
Արագիլի կտուցով,
Ոզնու փուշ ու տոտիկով…
Հա՛, հա՛, հա՛, հա՛, հա՛,
Հի՛, հի՛, հի՛, հի՛, հի՛…
Ապրիլի մեկն է, գիտե՞ս,
Կատակների ուրախ օր,
Զվարճանում ենք այնպես,
Խաբվելը հեշտ է այսօր։

Թարգմ. ՀԵՂԻՆԵ ՄՈՒՐԱԴՅԱՆ



Նկ. ԱՐՏՈ ՉԱԳՄԱՔՋՅԱՆԻ




*Ոչ ոք չգիտե, թե Անդոկը քանի ծառ է ջարդել կամ ջարդե՞լ է երբևէ, բայց բոլորը գիտեն, որ նա մի ծառ է տնկել: Եթե դու, սիրելի ընթերցող, մինչև հիմա չես տնկել գոնե մի ծառ, ապա անպայման պիտի տնկես: Այն ժամանակ քեզ ավելորդ չեն թվա Անդոկի արցունքները: Ի՞նչ կանես դու, երբ տեսնես, որ մի հսկայական մեքենա, որին էքսկավատոր են կոչում, արմատախիլ է անում ծառը, քո ձեռքով տնկած ծառը: Այն էլ թթենի: Իսկ Անդոկը դադարեց լաց լինելուց, վճռական առաջ եկավ և ինչքան ուժ ուներ կանչեց.*

*Կանգնեցրու՛, քեռի՛, կանգնեցրու՛:*

*— Կանգնեցրու-ու՛-ու՛, -կանչեց նաև նրա փոքր քույր Անուշիկը, որպեսզի մի բանով զգացնել տա, որ ինքն էլ այդտեղ է:*

*Էքսկավատորը կանգնեց: Մեքենավարն իջավ:*

*— Ծառը ինքս եմ՛ տնկել, — ասաց Անդոկը, — թթենի է: Իսկ դու...*

*Շարունակելու հարկ չկար: Նայելով ծառի կողմը, մեքենավարն ամեն ինչ հասկացավ. էքսկավատորի շերեփ-կնճիթը սպառնալից մոտեցել էր. թթենուն և, ուր որ է, նրան ծածկելու էր մի հսկայական հողաբլրով:*

*— Քանի՞ տարեկան ես, — հարցրեց մեքենավարը:*

*— Ութ:*

*— Իմ տղան հինգ տարեկան է, բայց դեռ ծառ չի տնկել, — ափսոսաց մեքենավարը:*

*— Ես էլ եմ հինգ տարեկան, ասաց Անուշիկը:*

*Մեծերի գործին մի՛ խառնվիր, — սաստեց նրան Անդոկը:*

*Հենց այսօր ես կասեմ իմ տղային, որ նա անպայման ծառ տնկի: Նրա անունը Սուրեն է և վատ տղա չի: Ինձ միշտ լսում է, — շարունակեց մեքենավարը:*

*— Քեռի՛, իսկ տնկածները դուք միշտ արմատախի՞լ եք անում, — հարցրեց Անդոկը:*

*Պատահում է: Բայց ավելի շատ հին ծառեր ենք արմատախիլ անում: Հին տների հետ միասին: Ձեր տունն էլ է հին, փողոցն էլ: Քանդում ենք նորը կառուցելու համար: Այստեղով տրամվայ է անցնելու:*

*— Տրամվայը լավ է, ասաց Անուշիկը, -գրնգում է: Երկու վագոնանոցն ավելի լավ է:*

*Իմ ծառը հին չէ, նոր եմ տնկել, անսպասելիորեն լաց եղավ Անդոկը, մի՛ ջարդի, քեռի՛, խնդրում եմ: Հարյուր տասնութ անգամ ջրել եմ:*

*— Ութը դույլ ես եմ բերել, — ասաց Անուշիկը, — ցույց տալով ձեռքի փոքրիկ դույլը:*

*Քեռին նայեց ծառի կողմը: Դա մի երեք տարեկան թթենի էր: Արդեն աշուն էր, և նրա տերևները դեղնել էին: Մեքենավարը ծխեց, հետո նստեց էքսկավատորի թրթուրի վրա, միշտ նայելով թթենու կողմը: Ծառը փոքրիկ բակի միակ զարդն էր: Տունը անշուք էր, կավածեփ և փլվելու էր էքսկավատորի կնճիթի առաջին զարկով: Հետո նրա հայացքը դանդաղ տեղափոխվեց փողոցի հակառակ կողմը: Ձեռքերը թափահարելով և ինչ-որ բան խոսելով մոտենում էր մի մարդ: Մեքենավարը մոտ կանչեց Անդոկին:*

*— Ա՛յ, գալիս է մեր աշխդեկը, այսինքն աշխատանքի ղեկավարը: Դու նրան Սամվել Մաթոսիչ ասա: Սիրում է այդպես: Եվ երբ աչքերն արագ-արագ ճպճպացնի ու բարձր խոսի, չվախենաս: Ասա, որ ծառը դու ես*

տնկել, որ դեռ ջահել է ու հրաշալի ծառ կդառնա: Համարձակ եղիր:

— Ինչու՞ է կանգնել էքսկավատորը, ո՞վ է կատարելու քո պլանները, ես հո բոլորի փոխարեն չե՞մ աշխատելու,— միանգամից վրա տվեց աշխղեկը:

— Ես... ես ծառ եմ տնկել,— դանդաղ առաջացավ Անդոկը:

— Մենք ծառ ենք. տնկել,— մեջ ընկավ Անուշիկը,— և ջրել ենք:

Անդոկը խեթ նայեց Անուշիկին, իսկ աշխղեկն ավելի արագ ճպճպացրեց աչքերը: Մեքենավարը, Անդոկը և նրանց հետ Անուշիկը մեկեն սկսեցին խոսել: Աշխղեկը կեսից ընդհատեց.

— Ծառ-մառ չգիտեմ, քշի՛:

— Չե՛մ քշի,— ասաց մեքենավարը,— դու նախ լսիր մեզ: Երեխաները թթենու ծառ են աճեցրել և ուզում են, որ ապրի:

Աշխղեկը լսեց և ասաց, որ դա իր գործը չէ: Իր խնդիրն է տեղ բացել, որպեսզի նոր շենքեր կառուցեն, ասֆալտապատ փողոց բացեն: Իսկ ծառապատման, ծաղկի ու մնացած բաների մասին թող ուրիշները մտածեն: Այդ գործով զբաղվող հատուկ մարդիկ կան: Ինքը, նույնիսկ, չի կարող ասել, թե ծառը փողոցի որ մասում է ընկնում: Այդ հարցը վճռող հատուկ մարդիկ նույնպես կան: Թող երեխաները նրանց դիմեն: Իսկ դու, մեքենավար, էքսկավատորը գործի գցիր: Առհասարակ վատ չի լինի, որ երեխաները վազեն տուն:

Բայց այնպես եղավ, որ ինքը վազեց, որովհետև շտապ կանչեցին: Երբ նա հեռացավ, մեքենավարն աչքով արեց Անդոկին, բացեց էքսկավատորի խցիկի դուռը, Անդոկին և Անուշիկին նստեցրեց փափուկ բազմոցին ու պատվիրեց սպասել մինչև ինքը ճարտարապետի մոտից գա: Գնալուց առաջ նա երեխաներին մի փոքր դաս տվեց: Ճարտարապետները շատ խելոք մարդիկ են: Նրանք շենքերն ու փողոցները նախ նկարում են թղթի վրա և գիտեն, թե որտեղ է ընկնում ամեն մի ծառն ու հին տունը:

— Եթե ես մեքենավար լինեի,— քեռու գնալուց հետո ասաց Անդոկը,— այնպես կանեի, որ այս ծառը չվնասվեր: Էքսկավատորը դեկ ունի:

— Հիմա մայրիկը մեզ փնտրում է,— մտահոգվեց Անուշիկը:

— Եթե մենք գնանք, ծառը կջարդեն:

Ու մինչ Անդոկն ու Անուշիկը վիճում էին, թե որը ճիշտ կլինի՝ մայրիկին ներկա-



յանա՞լ, թե՞ ծառը փրկել, էքսկավատորին մոտեցան երեք մարդ: Նրանցից մեկը հանեց գծագրած թղթեր և մատիտը սահեցրեց նրանց վրայով: Ապա մատիտը կանգ առավ, գծագրի վրա թողնելով մի. սև կետ:

— Ընկնում է ուղիղ մայթի վրա, — ասաց մեքենավարին մատիտավորը: Չի խանգարում շենքերին: Եթե դուք դեմ չլինեք, ծառը կարող է մնալ:

Հետո նա հիշեցրեց, որ գարնանը թթենին հարկավոր է պատվաստել, որպեսզի նա վայրի չմնա և քաղցր պտուղներ տա:

— Լավ, — ասաց մեքենավարը, — ծառը կմնա:

Այս ամենը լսեցին Անդոկն ու Անուշիկը: Նրանք հավատացին մեքենավարին, որ ծառը կմնա և խոստացան իրենց նոր բակում էլ ծառ տնկել և ուրախ-ուրախ գնացին տուն:

Նրանք չիմացան, որ ծառը նախ տեսնելու եկավ ճարտարապետը, ապա շենքը կառուցող ինժեները, հետո մյուս շինարարները: Երեխաները հին փողոցը չեկան, որովհետև իրենց նոր տունը հեռու է, Հրազդանի կամուրջի մոտ: Չեկան և չլսեցին, թե բանվորներն ինչպես էին հիշեցնում միմյանց.

Զգո՛ւյշ, Անդոկի ծառն է, չվնասվի հանկարծ:




Ակնարկ

ՆԱՄԱՐԻ ՏՈՆՈՅԱՆ

Նկ. ՀՐԱՉՅԱ ԽՈՒԴԱՎԵՐԴՅԱՆԻ

Փողոցի ասֆալտը տաքացած էր. նույնիսկ շենքերի ստվերներում շոգ էր:

Այստեղ, «Աշխատանք» մարզադաշտում, հազիվ զգալի հովը ծուլորեն շարժում էր խաղադաշտի անկյունային դրոշները. և համեմատաբար զով էր: Դուրգենը շորերը հանել էր եզրային գծից քիչ այն կողմ՝ վազքուղու վրա և միայն տրուսիկով՝ պառկել էր եզրային գծի մոտ, կանաչին, արևի տակ: Մարզադաշտում նրան ամենքը գիտեին, նրանց տունը բանվորական մարզադաշտից հեռու չէր, և նա համարյա ամեն օր լինում էր այդ մարզադաշտում, ամեն օր, երբ մարզվում էր «Նաիրի» ֆուտբոլային թիմը: Նրա մարմինը համարյա սև լինելու չափ թուխ էր. ամեն անգամ նա այդպես պառկում էր մոտ երկու ժամ, այսինքն՝ այնքան, որքան տևում էր թիմի մարզումը: Եվ հաճախ էր պատահում, որ ֆուտբոլիստներից մեկի հարվածով գնդակը դուրս էր թռչում դաշտից, եզրային գծից այն կողմ: Դուրգենը ցատկում էր տեղից, վազում էր գնդակի ետևից. ֆուտբոլային թիմի մարզիչ Խաչմանուկյանին զարմացնում էր այդ տղայի արագ վազքը. Դուրգենը հասնում էր գնդակին, ճարպկորեն շեղում էր գնդակի ընթացքը կամ կանգնեցնում էր և հարվածում դեպի ետ: Գնդակը միշտ հասնում էր ֆուտբոլիստներից որևէ մեկին. մարզիչը նկատում էր, թե հարվածի պահին ինչպես են հանկարծ պրկվում, թուխ մաշկի տակից դրսևորվում նրա ազդրերի և սրունքների մկանները. և երբ մոտ էր լինում նրան, մարզիչը հարցնում էր.

— Դու սպորտով պարապու՞մ ես:

— Ո՛չ,— ասում էր Դուրգենը:

— «Նաիրին» համալրելու համար մենք պատանիների թիմ ունենք,— ասում էր ֆուտբոլի մարզիչը:— Ես ինքս եմ մարզում:

Դուրգենը լռում էր: «Կցատկեմ տասներեք մետր հիսուն սանտիմետր, ապա կարելի է ասել, թե պարապում եմ սպորտով»— մտածում էր նա և մնում էր պառկած. խաղադաշտի եզրային գծից քիչ այն կողմ:

## 2.

Արևը արդեն թեքվել էր ցած, «Սպարտակ» մարզադաշտի նստատեղերի ստվերը տարածվել էր դաշտի վրա, մինչև ցատկափոսը, մինչև նրա մոտ դրված ցածր ու երկար նստարանը:

Թեև Գուրգենը հոգնած էր, հիմա օդը զով էր, և ցատկելը թվում էր ավելի դյուրին ու թեթև: Նա ձեռքով ուղղեց հրման տախտակի մոտի հողաշերտը. ամեն անգամ այդ հողաշերտի վրա կռանալիս նա հիշում էր, որ մի ժամանակ իր մարզիչ Յարդմյանը և ինքը շատ են ջանացել, չարչարվել, որպեսզի ինքը թափավազքից հետո կարողանար ցատկը սկսել ճիշտ այդ տախտակից և թաթի ծայրով հողաշերտը չեղծել: Հիմա Գուրգենը վաղուց ունի մշակված թափավազք և կարողանում է ցատկըն սկսելիս ոտքի թաթը հպել ճիշտ այդ տախտակին: Այժմ սանտիմետրերի համար պայքարը ընդունել էր ավելի նուրբ, ավելի դժվար յուրացվող բնույթ. հաշվի մեջ էր յուրաքանչյուր շարժում, մարմնի, թևերի, ոտքերի յուրաքանչյուր դրություն. մշակված, անթերի յուրացված կատարումը այժմ վճռական էր:

— Բայց ամենից կարևորն է,—ասում էր մարզիչ Յարդմյանը,—սպորտսմեն լինել: Ոչ միայն ֆիզիկապես սպորտսմեն,—պա ավելացնում էր նա:

Թափավազքից առաջ Գուրգենը սովորություն ուներ մի քանի վայրկյան կանգնել, հայացքը առջևը՝ ցատկափոսին և, մինչև ցատկափոսը չնկատելով ոչինչ, սկսել վազքը. այդ կրկնվել էր հարյուր, հազար անգամ, շատ օրեր, ամիսներ, և նա բնազդաբար զգում էր, որ ահա այս պահին իր ոտքերի տակ կլինի ցատկատախտակը, ինքը պիտի անի վերջին լայն քայլը, իրանը քիչ ետ թողնի ու ոտքով հրվի: Երկրորդ քայլը անելիս նա հիշեց մարզիչի խոսքը, ո՛չ. նա հիշելու ժամանակ չուներ, ավելի ճիշտ՝ նա զգաց այդ խոսքը. «Թափային ոտքի ծունկը քիչ ավելի վե՛ր քաշիր», նա վեր քաշեց ծունկը. և երկրորդ քայլը. նա զգաց, որ իսկապես լավ ստացվեց: Նա նայեց ցատկափոսի աջ ու ձախ եզրերին. գոնե հիմա ամեն ինչ պետք է լավ ստացված լիներ. ախր ինքը ցատկելիս իրեն զգացել էր թեթև և ուժեղ. ամեն ինչ, թվում էր, կատարվել էր անթերի, եռացատկի յուրաքանչյուր քայլը. իր աջ ու ձախ կողմերում՝ փոսի եզրափայտերի վրա նա տեսավ նույն նշանները, որոնք սովոր էր տեսնել յուրաքանչյուր եռացատկից հետո. ահա արդեն երկու ամիս շարունակ. այդ նշանակում էր, կրկին տասներկու մետր յոթանասուն սանտիմետր, կամ մի քիչ ավելի, կամ մի քիչ պակաս: Դա կրկնվել էր շատ անգամ և ջլատող էր. նա հակեց գլուխը, ելավ ցատկափոսից և նույնիսկ թափ չտվեց սրունքներին կպած ավազը: Մոտեցավ, նստեց երկար նստարանին, մարզիչ Յարդմյանի կողքին. նա չէր էլ կասկածում, որ ինչ-որ բան իր ցատկի մեջ վատ



էր ստացվել. և որ այդ մի ինչ-որ բանը անպայման նկատել էր մարզիչը. սպասում էր, որ նա ասի՝ «Հրվելու ժամանակ թափային ոտքի սրունքը», կամ՝ «Երկրորդ քայլի ժամանակ իրանը...», կամ նման մի բան:

— Բաքու գնալու և միութենական մրցումներին մասնակցելու համար դու պիտի ցատկես տասներեք մետր հիսուն սանտիմետր: Միայն այդքան ցատկելով, դու կարող ես թիմին միավորներ բերել:

## 3.

Բաքու մեկնելու համար թեթև ատլետների հավաքական թիմը մարզվում էր լարված: Մարզվում


29

էին առավոտյան, մարզվում էին երեկոյան. եզրափակիչ ութ հարյուր մետրը նրանք վազում էին համարյա մթի մեջ և մարզադաշտի մյուս ծայրից մարզիչ Յարդմյանի միայն ձայնն էին լսում. «Դեպի հանդերձարան»: Այնուհետև մարզիչին նրանք հանդիպում էին մարզադաշտի մուտքի մոտ, և նա յուրաքանչյուրին տալիս էր վաղվա օրապահիկի կտրոնը, լարված մարզվելու համար նրանք պիտի լավ սնվեին: Նրանք կտրոնը ծալում դնում էին գրպանները, և մարզիչն ասում էր. «Վաղը ժամի յոթին՝ այստեղ»: Մի անգամ, երբ նա բաժանեց կտրոնները, իր մոտ ավել մնաց մի կտրոն: Այդ օրը պարապմունքին ներկա էին ամենքը. ինչ-որ մեկը պարապմունքից հետո չէր մոտեցել իրեն և կտրոն չէր վերցրել: Հետևյալ օրը մարզումից առաջ մոտենալով շարքին՝ մարզիչ Յարդմյանը ասաց.

— Երեկ ինձանից ո՞վ կտրոն չի ստացել:

Բոլորն էլ ստացել էին: Բայց շարքում չկար Գուրգենը, հեռացատկող Գուրգենը:

Գուրգենը շարքում չէր և հետևյալ օրը:

— Հիվա՞նդ է,—հարցրեց մարզիչը:

Պարզվեց, որ Գուրգենը հիվանդ չէ, պարզվեց, որ նա հանդիպել է իր ընկերներից մեկին և ապսպրել է ասել մարզիչին, որ ինքը՝ Գուրգենը այլևս չի հաճախի մարզանքների, որ առհասարակ ինքը չի հավատում, թե կարող է ցատկել տասներեք մետր հիսուն սանտիմետր, և որ ինքը՝ Գուրգենը երկու ռուբլի հիսուն կոպեկ արժող օրապահիկի համար չէր, որ մարզվում էր: «Կգա՞, թե՞ չի գա»—մտածում էր մարզիչը: Եվ սպասում էր:

Եվ ահա հետևյալ օրը իր առջև շարված սաների շարքին նայելիս մարզիչ Յարդմյանը երկու ձեռքով ուղղեց ճակատի վրա ռետինե ժապավենով ամրացված հովարը. Նա այդ արեց դիտավորյալ, որպեսզի ձեռքերով ծածկի աչքերը և շարքում կանգնած իր սաներից որևէ մեկը այդ պահին չնկատի դրանք. Նա նրանց սովորեցնում էր միայն լինել ուժեղ ու կամային, լինել համառ ու անընկճելի, և չէր ուզում, որ նրանցից որևէ մեկը նկատեր իրենում որևէ թուլություն: Նրա աչքերում ափսոսանք կար:

Մարզիչ Յարդմյանը չորս տարի մարզել էր Գուրգենին:

4.

Նորից շոգ էր, և Գուրգենը նորից պառկել էր խաղադաշտի եզրին:

«Նաիրիին» կից պատանեկան թիմի մարզիչ Խաչմանուկյանը դատում էր խաղը: Եզրային հարվածի ժամանակ նա մոտ էր այն տեղին, ուր պառկած էր Գուրգենը:

— Դու խանգարում ես,—ասաց Խաչմանուկյանը:

Գուրգենը ելավ, կանգնեց քիչ հեռու, վազքուղու վրա: Մարզիչը սուլեց, պատանի մի՝ ֆուտբոլիստ



խփեց եզրային հարվածը. գնդակը ոստնեց դաշտի մեջ: Մարզիչը դարձավ Գուրգենին:

— Դու, գիտեմ, ֆուտբոլ սիրում ես,—ասաց նա,—բայց ինչո՞ւ չես խաղում՝ չգիտեմ: Արի ավելի պարզ խոսենք. ինձ լավ եզրային պաշտպան է հարկավոր, դու լավ վազում ես, վատ էլ չես հարվածում...

Քաղաք վերադառնալու ճանապարհին մարզիչ Խաչմանուկյանը ուրախ էր.

— Ես,—ասում էր նա,—այսօր հիանալի եզրային պաշտպան եմ ճարել...—մարզիչ Յարդմյանի հետ նրանք սովորել էին Ֆիզկուլտուրայի ինստիտուտում և վաղեմի ընկերներ էին. հիմա նրանք

ավտոբուսի մեջ միևնույն նստարանին էին նստած, երկուսն էլ միշտ միևնույն ճանապարհով էին աշխատանքի գնում-գալիս և այդպես, հաճախ էր պատահում.

— Տես ինչպես եղավ,— շարունակեց Խաչմանուկյանը:— Այդ տղան, ես գիտեի, որ ֆուտբոլի սիրահար է, մեր մարզումներին միշտ ներկա էր լինում: Տեսնում եմ՝ ամուր ոտքեր ունի, ուժեղ է. և հետը մեղմ էի: Բայց նա չէր ցանկանում ֆուտբոլիստ դառնալ: Հույս չկար: Վերջապես կոպտեցի նրան. «Նստարաններ կան,— ասում եմ,— նստիր, ինչքան կուզես նայիր: Ի՞նչ ես քիթդ դաշտ մացնում»: Եվ ի՞նչ, նա ցանկանում է խաղալ: Ինչպես էր նրա անունը... Գուրգեն Ղազարյան, մի քիչ լավ չի հընչում, բայց լավ ֆուտբոլիստ կլինի...

Յարդմյանը լուսամուտից դուրս նայեց.

— Հետևյալ կանգառը իմն է,— ասաց նա:

Ավտոբուսից իջնելուց հետո նա մտածեց, որ ամեն մարզիչ պիտի լավ ճանաչի իր սաներին, և մինչ ավտոբուսը կշարժվեր, նա մոտեցավ լուսամուտին և կարողացավ ասել.



— Այդ Գուրգեն Ղազարյանը ինձ մոտ էր պարապում. նա պիտի ցատկեր տասներեք մետր հիսուն սանտիմետր, որպեսզի թիմին միավոր բերեր, բայց դա դժվար էր. նա կարող էր այդքան ցատկել, բայց դա շատ դժվար էր, և նա փաստորեն վախեցավ:

## 5.

Գուրգենը դաշտում խաղացող մյուս ֆուտբոլիստների միջև ամենաարագաշարժն էր: Նրանից հմուտ ֆուտբոլիստ դուրս կգար, բայց մարզիչ Խաչմանուկյանը գիտեր, որ հաղթելու համար միայն այդ քիչ է. միայն լավ խաղացող կամ արագավազ լինելը հաղթելու համար շատ քիչ է. այս բանը մարզիչ Խաչմանուկյանն իր սաներին շատ անգամ է ասել, և կյանքն էլ շատ անգամ այս բանը համոզել է նրանց: Նա իջավ աստիճանների վրայից, որտեղից դիտում էր խաղը:

— Գուրգե՛ն,— ասաց նա, ընտրելով հարմար պահ, երբ նա մոտ էր իրեն և ինքն ու նա կարող էին մյուսներին անլսելի խոսել,— դու ֆուտբոլը սիրեցի՞ր:

— Ես թեթև ատլետ եմ եղել,— ասաց Գուրգենը,— և եռացատկը ավելի եմ սիրում, բայց դժվար է, շատ դժվար է արդյունքի հասնելը:

Գնա հանդերձարան և հագնվիր,— ասաց մարզիչը:

Գուրգենը չհասկացավ նրան, ի՞նչ կապ ուներ այդ՝ թեթև ատլետիկան սիրելու հետ:

— Գնա և հագնվիր,— կրկնեց մարզիչը:— Ֆուտբոլում երբեմն ավելի դժվար է լինում արդյունքի հասնելը և այդ ժամանակ կարևոր է ոչ թե այն, թե դու լա՞վ խաղացող ես, թե՝ չէ, այլ՝ դու սպորտսմե՞ն ես, թե՞ ոչ:

— Ես ձեզ չեմ հասկանում,— խոստովանեց Գուրգենը:

— Ֆուտբոլում էլ կան պահեր, երբ թվում է, թե ամեն ինչ տանուլ է տված, երբ թվում է, թե քեզանից չես կարող պահանջել ավելին և անել ավելին. սպորտի մեջ հեշտ տեղեր չկան: Իսկ ինձ պետք չեն միայն լավ խաղացող կամ լավ վազող տղաներ, սպորտսմեններ են պետք: Գնա հագնվի՛ր:

## 6.

Գուրգենը վերադարձավ:

Մարզիչ Յարդմյանը իր սաների շարքին մոտենալիս նրան տեսավ, իր մշտական տեղում կանգնած. մարզիչը չգիտեր, թե ընկերները ինչպես էին ընդունել նրան, ի՞նչ էին պատմել, և ի՞նչ էր պատմել նա նրանց: Հիմա նա կանգնած էր իր տեղում, և երբ մարզիչը մոտենում էր, սաները միշտ լռում էին: Բայց մարզիչը գիտեր, որ նրանք սպասում են, թե Գուրգենին ինչպես կդիմավորի ինքը՝ մարզիչը: Նա բացեց մարզումների տետրը, նայեց, ինչ-որ նշումներ արեց, կարծես ամենևին էլ չէր նկատել տղային, բայց զգաց, որ այդպես չէր կարելի, պետք էր մի որևէ կերպ, մի որևէ բանով, թեկուզ հայացքով նշանավորել նրա վերադարձը, որևէ կերպ հասկացնել, որ հուզված է, թեկուզ՝ ուրախ է: Եվ միայն հետո, երբ մարզադաշտի շուրջը երկու շրջան վազելուց հետո սաները ցրվել էին դաշտով մեկ ու վարժվում էին, մարզիչ Յարդմյանը մոտեցավ նրան և ասաց.

— Եկա՞ր:

Եթե Գուրգենը պատասխաներ միայն՝ «եկա», այդ բառը գուցե ոչինչ չէր ասի, և շատ բան անհասկանալի կմնար: Նա ասաց.

— Ուզում եմ իսկական սպորտսմեն լինել:

Մարզիչի աչքերին նայելիս Գուրգենը զգաց, որ այդ կարճ, սովորական խոսքով ասաց ամենը, ինչ ինքը ուզում էր, որ մարզիչը հասկանար:

# „ԽԵԼՈՔ" ՌՈԲՈՏԸ

Ն. ԿՈԲՐԻՆՍԿԻ



Այո, այդ իսկապես որ հրաշք էր:

Փոքրիկ սեղանի մոտ նստած էր մի կարճահասակ գրագիր՝ աջ ձեռքին բռնած սագի փետուր: Նա խնամքով թաթախում էր փետուրը թանաքամանի մեջ և, գլուխը խոնարհած, ջանասիրությամբ գեղեցիկ ու խոշոր տառերով դուրս էր բերում ուղիղ տողեր: Յուրաքանչյուր նախադասությունից առաջ նա խոր մտածում էր, կարդում գրածը, ապա թանաքը չորացնելու համար թղթի վրա ավազ էր ցանում, իսկ հետո թափ տալիս գրածի վրա:

Դիմացը նստած էր նկարիչը՝ մատիտը ձեռքին: Նա նկարում էր առանց շտապելու, դադարներով: Մերթ նայում էր թղթի թերթերին, կարծես խորհելով, մերթ փչում էր թղթին՝ փոքրիկ կեղտերը հեռացնելու համար:

Գրագրին ու նկարչին ընկերակցում էր մի աղջիկ, որը նստած էր ֆիսհարմոնիայի մոտ: Մատներով ստեղնաշարին զարկելով, նա պարզորոշ ու հեշտությամբ նվագում էր և գլուխը շրջելով նայում էր ձեռքերի դիրքին: Նրա կուրծքը մեկ բարձրանում էր, մեկ իջնում, կարծես աղջիկն անզոր էր զսպել երաժշտության ներշնչած հուզմունքը: Ավարտելով նվագը, աղջիկը թեթևակի խոնարհում էր գլուխը, շնորհակալություն հայտնում լսողներին:

— Իսկ ո՞րն է հրաշքը,— տարակուսանքով կբացականչեք դուք:— Այնքան էլ մի դժվար բան չէ գրելը, նկարելը կամ ֆիսհարմոնիա նվագելը:

Այո, բայց բանն այն է, որ գրագիրը, նկարիչը և նվագածուհին մարդիկ չեն, այլ անդրոիդներ,— մեքենայական մարդանման կառուցվածքներ, որ պատրաստել են շվեյցարացի հմուտ ժամագործներ՝ հայր և որդի Դրոները:

Սկզբում հայր Դրոն հռչակվեց իր նշանավոր հնչանակավոր ժամացույցով: Հենց որ ժամացույցի սլաքը մոտենում էր որևէ ժամի, հովիվը շրթունքներին էր մոտեցնում սրինգը և սուլում էր ժամանակը: Հովվի մոտ դրված էր խնձորով զամբյուղը: Եթե որևէ մեկը զամբյուղից խնձոր էր վերցնում, շնիկը հաչում էր: Հենց որ խնձորը տեղն էին դնում, հաչոցը դադարում էր:

Ժամացույցը շատ դուր եկավ Իսպանիայի թագավոր Ֆերդինանդ 6-րդին, և նա գնեց: Այն ժամանակ Դրոն մտածեց կառուցել մեքենայական գրագիր: Քսան ամսից հետո գրագիրն արդեն կարող էր գրել ամբողջ նախադասություն: Այս դեպքը պատահեց 1770 թվականի գարնանը:

Մի տարի անց ժամագործի տղան կառուցեց նկարչին: Իսկ շուտով երկու վարպետները սկսեցին միասին աշխատել՝ ձևավորելով նվագածուհուն: Մինչև օրս էլ նշանավոր հրաշք-ավտոմատները պահվում են գյուտարարների հայրենիքում՝ Շվեյցարիայում, Նեշատել քաղաքի գեղեցիկ արվեստների թանգարանում:

Մինչև 19-րդ դարի սկիզբը, կառուցվել են զանազան ավտոմատներ, որոնք ընդօրինակում էին մարդու բարդ շարժումները: Այդ ավտոմատները նվագում էին երգեհոն, ջութակ, ֆլեյտա, պարում էին, հասարակությանը գլուխ էին տալիս, համբիչով հաշվում էին, թուղթ էին բաց անում: Այդպիսի մեքենաներ կառուցել են շատ ականավոր գիտնականներ, մեքենագետներ, արվեստագետներ:

Մեքենա-մարդկանցով ժամանակին խիստ տարված էին նաև հին հույները: Հայտնի է նրանց «ավտոմատների թատրոնը»:

Հույներից հետո մեքենայական մարդիկ կառուցում էին արաբները: Նրանք նվիրեցին Կարլոս Մեծին ջրային ժամացույց, որի թվատախտակի թվանշանների վերևում գտնված բացվող դռնակներից դուրս էին ընկնում գնդիկներ ու ազդարարում ժամանակը: Ամեն անգամ ժամը 12-ին վերջին պատուհանից դուրս էին գալիս ասպետներ, փակում էին պատուհանները և նորից թաքնվում:



13-րդ դարում հռչակավոր գերմանացի փիլիսոփա և ալքիմիկոս Ալբերտ Մեծը ստեղծեց «երկաթե մարդ», որը ծառայում էր իրեն որպես դռնապան՝ բացելով ու փակելով դուռը:

18-րդ դարի ռուս մեքենագետ Կուլիբինը պատրաստեց մի հետաքրքիր ժամացույց:

Ոսկե ժամացույցի վերին մասը բացվում էր երաժշտական զարկերի նվագակցությամբ: Փոքրիկ, ոսկեզօծ պալատում երևում էր դամբարան, իսկ շուրջը նիզակակիր զինվորներ: Երբ պալատի ներսում երևում էր հրեշտակը, դուռը բացվում էր, իսկ նիզակակիրներն ընկնում էին երեսնիվայր: Այնուհետև դամբարանից դուրս էին գալիս երկու կին, և միաժամանակ երեք անգամ նվագ էր լսվում: Ժամացույցը դադարում էր խփելուց, և պալատի դռները փակվում էին:

Հիանալի անդրոիդ կառուցեց ֆրանսիացի Ժակ Վոկանսոնը:

# ՄՏՆՈՒՄ Է ԿՅԱՆՔ

Վ. ՊԵԿԵԼԻՍ

Մարդանման ֆլեյտահարը ֆլեյտան բռնել էր շրթունքների մոտ, օդ էր փչում նրա մեջ, մատները շարժում էր կափույրների վրա և կատարում տասնյակ տարբեր երաժշտական պիեսներ:

Առաջին հայացքից կարող է թվալ, թե այդ բոլոր մեքենայական մարդիկ, որոնք ծառայում էին միայն ազնվականության հաճույք պատճառելու և զվարճացնելու համար, ոչ այլ ինչ են, եթե ոչ անօգուտ տիկնիկներ և խաղալիքներ, որ ժամանակ առ ժամանակ, ժամանցի համար պատրաստում էին վարպետ մարդիկ: Սակայն անցյալի մեխանիկայի «հրաշքները» ցույց են տալիս այն ճանապարհի սկիզբը, որով ընթացել է ավտոմատիկայի զարգացումը:

Անդրոիդները, մեքենայական մարդիկ, հանդիսանում էին հոսող ջրի ու սեղմված զսպանակների մեխանիկական էներգիայի դարի արտացոլումը: Զսպանակներն ամեն տեսակի ավտոմատների մեջ շարժման մեջ էին դնում ատամնավոր անիվները, լծակները, մետաղաձողերի, բռունցքների, պտտակների ամենապարզ սխեմաներ: Ուստի կարելի է համարձակորեն ասել, որ անդրոիդները ժամացույցների յուրահատուկ տարբերակներն էին հանդիսանում:

Մեքենայական մարդիկ և ամեն տեսակի խաղալիք-ավտոմատներ կառուցելիս կուտակված փորձը հետագայում մեծ օգուտ բերեց:

Ձեռք բերված գիտելիքները օգտագործեցին գիտական հետազոտություններում, բնագիտության մեջ: Փոխադարձ ներթափանցման այս պրոցեսը նպաստեց այն բանին, որ գիտելիքների այն ժամանակվա մակարդակի պայմաններում պնդումներ երևան եկան, թե՛ կենդանին, թե՛ մարդն ավտոմատներ են:



Այն տարիներին, երբ մարդկանց մտքերին տիրում էին նման հայացքներ, գոյություն չուներ մեքենաների ու մեխանիզմների մշակված տեսություն, հայտնի չէին մաթեմատիկայի, ֆիզիկայի, մեխանիկայի շատ օրենքներ, որոնց համաձայն կարելի լիներ նախօրոք որոշել, թե ինչպես կաշխատի այս կամ այն մեխանիզմը, ինչպիսի ամրություն պետք է տալ տարբեր դետալների, ինչպիսի ճիգեր են հարկավոր որոշակի արագություն և հզորություն ստանալու համար:

Մեքենագետները, գյուտարարները, մեքենա կառուցողները հույս դնում էին միայն իրենց փորձի վրա, իրենց տեխնիկական հնարամտության վրա: Քրտնաջան աշխատանքը սովորաբար տևում էր տարիներ: Սխալվելով, կատարելով բազմաթիվ փորձեր, մարդիկ շարժվում էին դեպի իրենց նպատակը: Պետք եղած մեքենան ստեղծելու համար հարկ էր լինում կառուցել տասնյակ, իսկ երբեմն հարյուրավոր նոր և նոր մեխանիզմներ՝ ճանապարհ հարթելով անգիտության անանցանելի խուլ անտառներում:

Սկսվեց ծավալվել արդյունաբերական հեղաշրջումը, անցումը համատարած մեքենայական արդյունաբերության: Հաղթականորեն առաջ էր ընթանում տեխնիկան: Մեքենաներ երևացին արդյունաբերության մանածագործական, մետաղամշակման, լեռնային և ուրիշ ճյուղերում: Ամենուրեք տեղի է ունենում մեքենայացման բուռն պրոցես: Առաջին անգամ մարդու ձեռքերն ազատվեցին նյութի անմիջական մշակումից:

Բանվոր-գործիքն իր առանձնական թոքերի ամբողջ ուժով ճչաց իր հզորության մասին: Շոգեշարժիչը, էներգիայի այդ հզոր աղբյուրը, ստիպեց գլխավոր դերից հեռանալ կենդանի շարժիչներին՝ եզներին, ձիերին, ջորիներին և էշերին:

Բայց գլխավորը դարը չէր դա, եթե հանճարեղ ռուս մեքենագետ Իվան Պոլզունովը իր «հրաշունչ հսկայի» համար չհնարեր լողանավոր կարգավորիչ, որի օգնությամբ «ջուրը, գոլորշին ու կրակը իրենք իրենց շարժման մեջ էին պահում»: Շոգեշարժիչները հազիվ թե կարողանային թափանցել ամեն տեղ, եթե Ուատի հանճարը մարդկությանը չտար արագության կենտրոնախույս կարգավորիչով օժտված շոգեմեքենա:

Մարդիկ ձեռք բերեցին մի նոր ուժ, որը մինչ այդ անհայտ էր: Հիացողների բազմության առջև շարժում ու պտտվում էին ոչ թե զվարճության համար ստեղծված զանազան ծիծաղաշարժ խաղալիքներ, այլ իսկական «գործունյա» մեքենա-աշխատավորներ, մեքենա-բանվորներ:

Առաջին մեքենաների կարգավորող սարքերը թափանցում էին ամեն տեղ: Սկսեցին հարմարեցնել այդ սարքերը ամեն տեսակ ագրեգատների: Իսկ երբ հասավ «էլեկտրականության դարը» իր

վիթխարի հզորություններով, արագություններով ու մեծ ճշգրտությամբ, հետզհետե ամբողջ տեխնիկան ենթարկվեց ավտոմատիկայի իշխանությանը: Կարելի է համարձակորեն ասել, որ ավտոմատացումը դարձավ տեխնիկայի զարգացման հիմնական ուղենիշը:

Իսկ ի՞նչ եղան անդրոիդները: Ինչպե՞ս ավարտվեց նրանց զարգացման առաջին շրջանը, ուրախ ու անհոգ մանկությունը: Մասնակցո՞ւմ են արդյոք նրանք ժամանակակից արդյունաբերական պրոգրեսին:

Թագավորների պալատից ու դղյակների ազնվատոհմ հանդիսասրահներից մեխանիկական մարդկանց տեղափոխեցին թանգարանների խաղաղ դահլիճները: Այլևս չեն նվագում մեքենայական ֆլեյտահարներն ու թմբկահարները: Նրանք մոռացության են տրվել:

Նոր ժամանակներն իրենց հետ բերեցին նաև նոր գաղափարներ: Էլեկտրականություն, ֆոտոէլեմենտներ, բազմապիսի ռելեներ, ռադիոն թույլ տվեցին շատ բան ձեռք բերել տեխնիկայում: Նրանք թույլ տվեցին կառուցել նաև «էլեկտրական մարդիկ», որոնց անվանեցին ռոբոտներ: Դրանցից մի քանիսը գյուտարարները պատրաստում էին մարդու նման: Բայց, որպես կանոն, դրանց մեծ մասը մարդու հետ արտաքին նմանություն չուներ: Դրա փոխարեն ռոբոտները, ի տարբերություն իրենց «ծնողների», այսինքն՝ անդրոիդների, կարող էին մարդու համար մի որևէ օգտակար, բարդ աշխատանք կատարել: Նրանք վառում էին փարոսներ, փոխարկում էին լուսաֆորները, գրադարանում տեղափոխում էին գրքեր, գործի էին դնում հրշեջային ավտոմոբիլների շարժիչները և միաժամանակ բացում գարաժի դռները, առևտուր էին անում խանութներում, լուսանկարում էին, օգնում էին վարել նավեր և ինքնաթիռներ, կառավարել ավտոմեքենաներ, պահպանել բանկեր և պահեստներ, տեսակավորել պատրաստի դետալներ, վառում էին վառարաններ, հաց էին թխում և էլի ուրիշ շատ պիտանի գործեր էին կատարում:



Ռոբոտներից մեկը կոչվեց «միստր Տելեվոքս»: Նրա արտաքինն այնքան հրապուրիչ չէ: Նա ամբողջապես քառակուսի է և դժվարաշարժ: Աչքերը, բերանը և քիթը նկարված են: Նրա բաց իրանի մեջ երևում է հաղորդալարերի ու մեխանիզմների բարդ միահյուսումը:

Հետագայում՝ ինժեներ Վենսլին, «Տելեվոքսին» դիմամբ է մարդու նմանություն տվել: Նրա ռոբոտն օժտված է մի քանի տարբեր հրամաններ լսելու և կատարելու ընդունակությամբ, որոնք տրվում են սուլիչի միջոցով: Նա գործի է դնում փոշեծծիչը և օդափոխիչը, վառում է սենյակի լամպերը, բացում պատուհանները, փակում դռները:



«Իմ ռոբոտը, եթե դեն գցենք նրա պատյանը,— պատմում՝ էր Վենսլին,— ներկայացնում է ավտոմատիկ հեռախոսակայան, որտեղ, որպես աբոնենտներ, միացված են մի քանի էլեկտրաշարժիչներ»: Հենց այդ էլեկտրաշարժիչներն էին կատարում այն բոլոր գործողությունները, որոնց ընդունակ էր «Տելեվոքսը»:

Շուտով «Տելեվոքսի» ներսում տեղավորեցին թաղանթի (պլյոնկա) մի փոքրիկ կտոր, որի վրա մի քանի նախադասություն էր գրված: Ըստ հրամանի նրա ներսում ավտոմատիկորեն վառվում էր մի լամպիկ, էլեկտրաշարժիչն սկսում էր պտտվել և դրա հետ միասին բարձրախոսն արտասանում էր մի քանի նախադասություն:

«Էրիկ» անունով մի այլ ռոբոտ, որը կառուցել էր անգլիացի ինժեներ Ռիչարդսը, արտաքինով նման էր ասպետական զրահ հագած մարդու: Ըստ հրամանի նա կարող էր կանգնել: Այդ պահին նրա «աչքերը» լույս էին տալիս և «բերանում» վառվում էին փոքրիկ, կանաչ լամպիկներ: «Էրիկը» պատասխանում էր պարզ հարցերի՝ ժամը քանիսն է, տարեթիվը, ամսաթիվը:

Շուտով ռոբոտները մոդա դարձան: Ինչպես մի ժամանակ անդրոիդներին, այնպես էլ այժմ ռոբոտներին, որոնք արտաքինով մարդու նման էին, տեղափոխում էին քաղաքից—քաղաք և ցույց տալիս հասարակությանը:

1932 թվականի վերջին աշխարհ եկավ «Ալֆա» հսկայական ռոբոտը: Նա կշռում էր երկու տոննա: Ահա թե ինչ են գրել նրա մասին այդ տարիների գրքերից մեկում.

«Գլուխն ունի գլանի ձև: Աչքերը փակված են մի տարօրինակ ակնոցով՝ երկու հատ կլոր մետաղյա թիթեղներով, որոնք ունեն բազմաթիվ անցքեր: Հոմերական ուղիղ քիթ: Հսկայական բերան՝ սեղմված շրթունքներով: Գլխի երկու կողմերին ցցված են խոշոր ականջները, որոնց մեջ մտցված են միկրոֆոններ: Հզոր ձեռքեր, մատներ, ոտքեր: Կրծքի մեծ անցքից, որը ծածկված է կափարիչով, որպես արյունատար անոթներ, երևում են էլեկտրական հաղորդալարերը, այնուհետև շարժիչը, կոճերը և մեխանիզմի այլ մասերը»:

Այս ռոբոտը կարողանում էր կանգնել, նստել, բարձրացնել ու իջեցնել ձեռքերը, շարժել մատները, խոսել, սուլել, երգել: Նա աջ ձեռքով ատրճանակ էր կրակում և 20 մետր հեռավորությունից բոլոր գնդակները խփում էր համարյա միևնույն կետին:

1953 թվականին Չիկագոյում կազմակերպված

«Առաջադիմության հարյուրամյակը» ցուցահանդեսում ցուցադրվեց ռոբոտ-դատախազ: Մարդու այդ հսկայական ֆիգուրը ինքը արձակում էր ծխեր, բացում կուրծքն ու փորը, որոնց պատերը թափանցիկ էին, և սկսում էր բան բաց-տեղ դատախոսություն: Դատախոսը մատով ցույց էր տալիս մարդու ներքին օրգանների կառուցվածքը՝ սիրտը, ստամոքսը, փորոտիքը, լյարդը և բացատրում մարդասպանության պրոցեսը:

Ինչպես տեսնում եք, ռոբոտների կատարած գործողությունները երբեմն արտաքուստ շատ էֆեկտիվ էին լինում, ասես իրոք անխոսծ մարդկանց թվում էր, թե նրանց առջև կանգնած են շատ և շատ «խելացի» մեքենայական ստեղծագործություններ:

Ճիշտ է, նրանք մարդուն ազատում են մեքենային հնարելու և մեքենան այս կամ այն ձևով կարգավորելու մասին որոշումներ ընդունելու անհրաժեշտությունից, բայց այդ բոլոր ավտոմատները շատ «նեղ մասնագետներ են»: Նրանց մեջ կառուցվող ամբողջ պրոցեսը պետք է առաջուց նախատեսված լինի:

Կարճ ասած, ռոբոտը, որպես կանոն, կատարում է միայն այն խնդիրը, որի լուծման համար նա ստեղծված է: Նա չի կարող կշռադատել և բարդ իրադրության դեպքում ելք գտնել:

Միևնույն ժամանակ 20-րդ դարի հրաշքը՝ «էլեկտրական մարդիկ» արդեն շատ բանով են տարբերվում «մեքենայական մարդկանցից»: Սրանք ավելի ճկուն են աշխատելու ժամանակ և ավելի հզոր: Սրանց մեջ երևան են եկել տեսողություն՝ աչքեր (լուսանկարչական տարրեր), լսողություն՝ ականջներ (միկրոֆոններ), խոսք՝ բարձրախոսներ:



# ԻՆՉՊԵ՞Ս ՎԵՐՀԻՇԵԼ ԻՄԱՑԱԾԸ

Զրույց

Ինչպե՞ս և ո՞ր ձևն է հարմար դասը լավ սովորելու, գիրք կարդալու, յուրացնելու, միտքը պահելու և վերարտադրելու համար: Սովորել ամբողջը միանգամի՞ց, թե՞ մասերով:

Եթե նյութը բարդ է ու ծավալուն, պետք է մտքով այն բաժանել «իմաստալից հատվածների»: Դրա համար հարկավոր է նախօրոք կարդալ ամբողջը և պատմել բովանդակությունը:

Որևէ բան անգիր անելու դեպքում էլ նույն կերպ ենք վարվում: Սկզբից կարդում ենք ամբողջը, հիշում բովանդակությունը և շարադրման հաջորդականությունը: Բանաստեղծությունը փոքրածավալ լինելու դեպքում երկու անգամ ընթերցելուց հետո ծածկում ենք գիրքը ու կրկնում ամբողջը: Եթե ծավալուն է, բաժանում ենք մասերի:

Երկու օր առաջ Լուսիկը «5» գնահատական ստացավ «Իմ ընկեր Նեսոն» պատմվածքը պատմելու, վերլուծելու համար: Ուսուցչի առաջարկությամբ նա դասարանական ժողովում պատմեց, թե ինչպես է պատրաստել դասը, որն էր «5» ստանալու գաղտնիքը: Լուսիկը նախ ցույց տվեց պատմվածքի պլանը.

1. Նեսոյի մանկությունը.
2. Նեսոյի դժբախտությունների պատճառը:

Նա ըստ պլանի պատմեց ամբողջ պատմվածքը, հակիրճ խոսելով գյուղական կյանքի մանրամասնությունների, ուսումնարանի, վարժապետի միջոցառումների, հեղինակի գյուղից-քաղաք, քաղաքից-գյուղ գնալու միջոցառումների մասին: Նա գլխավոր ուշադրությունը սևեռեց հեղինակի նպատակադրման վրա:

Աղքատությունը ծնել է տգիտություն, որն ավերել է մարդու ներքին արժանիքները և Նեսոյին մղել հանցագործության:

Ինչ խոսք, նյութի նման յուրացումը երկար ժամանակ կմնա հիշողության մեջ, որպես թանկարժեք փաստերի պահեստ, աշակերտը դրանք կօգտագործի առօրյա կյանքում՝ համեմատելով Նեսոյի կյանքը մեր լուսավոր ու երջանիկ օրերի հետ:

Խորհուրդ չի տրվում նյութը միանգամից ուսումնասիրել: Նպատակահարմար է կրկնողության նյութը բաշխել մի քանի օրերի: Բանաստեղծությունը կարդալուց ու մի քանի անգամ կրկնելուց հետո, այն պետք է նորից կրկնել հաջորդ օրը, ապա մի քանի օր ու շաբաթ շարունակ:

Ժամանակի վրա բաշխված կրկնությունները բարձրացնում են մտապահման արդյունավետությունը: Քերականության, թվաբանական օրենքները ու կանոնները, պատմական տարեթվերը նման ձևով կրկնելու դեպքում մտապահվում են ավելի երկար ժամանակ:

Նա, ով փորձում է դասը սովորել մի քանի րոպեում՝ հաջորդ օրը պատասխանելու համար, միշտ անհաջողության կմատնվի: Կարևոր է նաև, որ աշակերտը ուսումնասիրած նյութի վերարտադրման ժամանակ, պատմելիս, ինքնուրույնություն ցուցաբերի, ձևափոխի այն, տեղին գործածի սովորած նոր բառերը, պատկերավոր նախադասությունները, հարստացնի, մարզի մտածողությունն ու հիշողությունը:

Պետք է ձգտել յուրացնելու կարևորը և ուշադրությունը պիտի կենտրոնացնել այդ կարևորի վրա: Սովորածը միշտ պետք է կապել նախորդ նյութի հետ: Դպրոցում ուսուցիչը նոր նյութը հաղորդելիս միշտ հիշեցնում է անցածը: Դա մոռացման դեմ պայքարելու ամենալավ միջոցն է: Թեթևակի կրկնությամբ կարելի է կանխել մոռացումը, իսկ մոռացածը վերականգնելը մեծ ջանքեր կպահանջի:

Խորհուրդ է տրվում դժվար նյութը կրկնել քնելուց առաջ, որովհետև քունը պայմաններ է ստեղծում յուրացրածը մտապահելու համար և բարերար ազդեցություն է թողնում, երբ առավոտյան թարմ ուղեղով ստուգվում է սովորածը:

Զպիտի մոռանալ նաև հետևյալը.

Կրկնության ժամանակ չպետք է նույնանման առարկաները միմյանց հետևից սովորել: Օրինակ՝ չի կարելի կրկնել պատմություն, գրական ընթերցանություն, հայոց լեզու, ռուսաց լեզու, այլ նախ պատմություն, որից հետո թվաբանություն, ապա գրական ընթերցանություն:

Ուշադրության և հիշողության զարգացման համար բացառիկ նշանակություն ունի նյարդային համակարգի նորմալ գործունեությունը: Դրա համար հարկավոր է երկարատև ու կանոնավոր քուն: Քնի ժամերը փոխվում են տարիքի հետ: 1—4-րդ դասարանների երեխաները օրվա մեջ պետք է քնեն 11.5 ժամ, 10—13 տարեկանները՝ ոչ պակաս, քան 10 ժամ, դեռահասները՝ ոչ պակաս, քան 9 ժամ:

Կյանքի ռեժիմի համար կարևոր է նաև ժամանակին ու կանոնավոր սնվելը: Վերջին անգամ ուտել կարելի է քնելուց երկու ժամ առաջ: Կարևոր է նաև աշխատանքի ու հանգստի հերթափոխությունը: Պետք է սովորություն դարձնել երբեք կիսատ չթողնել սկսած գործը: Պարապմունքը ու հանգիստը պետք է հաջորդեն միմյանց: Այդպիսի հաջորդականություն պետք է ստեղծել նաև աշխատանքի տեսակների մեջ՝ մտավոր աշխատանք, մարմնամարզություն, սպորտ, ֆիզիկական աշխատանք:

Դպրոցականը պետք է ունենա մաքուր օդում զբոսնելու, խաղալու իր որոշակի ժամերը:

Ով սահմանում է իր համար օգտակար ռեժիմ, նրա մոտ միշտ կենտրոնացած կլինեն ուշադրությունը և հիշողությունը:

*ԱՐՏՈ ԱՎԱԳՅԱՆ*



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ


1. Օազիսի խռովարարը — Գ. ԲԼԻՆՈՎԻ
2. Գրիր՝ թող Տանյան գա Երևան Վ. ԱՐԱՄՅԱՆ . . 5
3. Արևի ժպիտը Ե. ԱՌԱՔԵԼՅԱՆ . . . . . . . . . . 7
4. «Նխս մի նարված» — Հ. ՂՈՒԿԱՍՅԱՆ . . . . . . 8
5. Կետադրության նշանների բազմավորությունը — Գ. ՕՒՆԿՈՒ, Գ. ՇՏԵՖԱՆ 11
6. Ծաղիկներ — Վ. ԿԱՐԵՆՑ . 16
7. Մրցանակաբաշխության նյութերից . . . . . . . . 17
8. Մեծախանց արջուկը . . . 21
9. Առակ — ՄԵՏԱՔՍԵ . . . 22
10. Գետափին Ռ. ՍԱՐԳՍՅԱՆ 22
11. Աղանը երկինքում Մ. ՊԻՏԼՅԱՐՍԿԻ . . . . . . . . 23
12. Ալպիկի մեկը Լ. ԿՇԵՄԵՆԵՑԿԱ . . . . . . . . 25
13. Զգույշ. Անգղի ծառն է Ռ. ՀԱՄԲԱՐՅԱՆ . . . . . 26
14. Վերադարձ Կ. ՏՈՆՈՅԱՆ 29
15. «Ահլոր» որոտը մտնում է կյանք Ն. ԿՈՐՐԻՆՍԿԻ, Վ. ՊԵԿԵԼԻՍ . . . . . . 32
16. Ինչպես նիշել խմոզածր — Ա. ԱՎԱԳՅԱՆ . . . . . . 36
17. Ժամանց


Շապիկի առաջին էջը՝ Նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ


Խմբագիր՝ ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ ԱԼ. (գեղարվեստական խմբագիր), ԵՍԱՅԱՆ Վ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Լ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Ղ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ Վ., ՕՀԱՆՅԱՆ Ա.

Пионер“ на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир Банаки, № 41

Հասցեն՝ Երևան, Կարմիր Բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06

ՎՖ 01097 Պատվեր 422 Տպաքանակ՝ 9800: Տպագրական 5 մամուլ: Ստորագրված է տպագրության 9/III 1962 թ.: ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆկոմբինատ Երևան, Տերյան 91:

Գինը 20 կ.



# ՄԵԾ ՀԵՂԱՓՈԽԱԿԱՆՆ ՈՒ ՀԱՅՐԵՆԱՍԵՐԸ

Մոսկվայի Տվերսկոյ բուլվարի վրա մի երկհարկանի առանձնատուն կա։ Առանձնատան դիմաց, ծառերի մեջ մի արձան է կանգնած, որի վրա գրված է. «Ա. Ի. Գերցեն, 1812 — 1870 թ. թ.»։ 1812 թվականի ապրիլին այդ տանը ծնվեց ռուս մեծ գրող—հեղափոխական Ալեքսանդր Իվանովիչ Գերցենը։

Խաղաղ ու ձանձրալի էր անցնում կյանքը ազնըվականի այդ տանը, և բարի, զգայուն, փոքրիկ Գերցենը տեսնում էր, թե ինչքան անխղճորեն է հայրը վերաբերվում ծառաներին ու գյուղացիներին։

Հասավ սովորելու ժամանակը, և տղայի առաջին ուսուցիչը, ուսանող Իվան Պրոտոպոպովը փոքրիկ Գերցենին ծանոթացրեց Պուշկինի և Ռիլեևի արգելված բանաստեղծությունների հետ։ Տաղանդավոր տղան սկսեց ագահորեն կարդալ։
Եկավ 1825 թիվը։ Նիկոլայ Առաջինը դաժանորեն պատժեց դեկաբրիստներին, որոնք ապստամբել էին ինքնակալության դեմ։ Հետագայում Գերցենն այդ մասին գրեց. «Պեստելի և նրա ընկերների մահապատիժը վերջնականապես ցրեց իմ մանկական հոգու նիրհը»։

Դեռ մանուկ հասակում Գերցենը մտերիմ էր Նիկոլայ Օգարևի հետ։ Նրանք հաճախ էին շրջում իրար հետ և զրուցում շրջապատում տիրող անարդարությունների մասին։ Մի անգամ այդպես շրջելով նրանք բարձրացան Վորոբյովյան բարձրունքը և հիացած նայեցին առջևում բացվող գեղեցիկ տեսարանին։ «Այդպես մենք երկար կանգնեցինք,— գրում է հետագայում Գերցենը,— և հանկարծ գըրկախառնվելով Մոսկվայի առաջ երդվեցինք՝ մեր կյանքը զոհաբերել մեր ընտրած պայքարին»։ Իսկ ուսանողական նստարանին սկսվեց Գերցենի հեղափոխական գործունեությունը։ Նրան մի քանի անգամ աքսորեցին, բայց աքսորն ավելի էր կոփում Գերցենի ապստամբ ոգին, ամրացնում էր ցարիզմի նկատմամբ ունեցած նրա ատելությունը։

1847 թվականին, անընդհատ հետապնդումներից խուսափելով, նա գնաց արտասահման։ Լոնդոնում նա ստեղծեց ռուսական ազատ տպարան և սկսեց հրատարակել «Բևեռային աստղ» ամսագիրը։ Ամսագրի շապիկի վրա նա դրեց մահապատժի ենթարկված հինգ դեկաբրիստների նկարները։ Ամսագրում տպագրվում էին ցարական գրաքննության արգելած հոդվածները։ Գաղտնի ճանապարհով «Բևեռային աստղը» թափանցում էր Ռուսաստան։ Հետագայում, իր մանկության ընկերոջ՝ Օգարևի հետ նա հրատարակեց «Կոլոկոլ» թերթը, որի առաջին համարը լույս տեսավ 1857 թվականին։ Այդ թերթը բոլոր արգելքների միջով թափանցում էր Ռուսաստան։ Ահա թե ինչ է ասել Լենինն այդ մասին. «Կոլոկոլը» սարի պես կանգնեց գյուղացիության ազատագրման համար։ Ստրկական լռությունը խախտվեց»։

Ցարական գրաքննությունը նույնիսկ արգելում էր «Կոլոկոլի» մասին հիշատակելը, բայց չնայած դրան, տաս տարի անընդհատ ամբողջ աշխարհով մեկ հնչում էր «Կոլոկոլի» ձայնը։ Ռուսաստանի ամենախուլ անկյուններում կարդում էին այդ թերթը։

Ալեքսանդր Իվանովիչ Գերցենը հսկայական դեր խաղաց ռուսական հեղափոխության նախապատրաստման գործում։

Ապրիլի 6-ին Խաղաղության համաշխարհային կոմիտեի որոշմամբ նշվեց մեծ հեղափոխական, հայրենասեր ու գրող Գերցենի ծննդյան 150-ամյակը։

150

ՄՐՑԱՆԱԿԱԲԱՇԽՈՒԹՅԱՆ ՆՅՈՒԹԵՐԻՑ





Քույրեր

ԱՆԱՀԻՏ ԹՈՒԹՈՒՆՋՅԱՆ
(Երևան, Աբովյանի անվան դպրոցի 1-ին դասարանի աշակերտուհի, 8 տարեկան)

ԳԱՐՈՒՇ ՋԱՄԲԱԶՅԱՆ
(Լենինական, 7-տարեկան)



Շուն



Առողջարան

ԱՐԱՄ ԲԵՆԵՐՋՅԱՆ
(Երևան, № 64 դպրոցի 5-րդ դասարանի աշակերտ, 11 տարեկան)